1916 № 47.—Նոյեմբերի 20

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## Համաշխարհային պատերազմը

*Ռուսաց Արեւմտեան ճակատ.*—Այս ճակատի վրայ գերմանական մի քանի յարձակումներ յետ են մղուած Ռուսների կողմից։ Ռիգայից արեւմուտք և Բիստրացա գետաձորի շրջանում գերմանական գումարտակները ցրիւ են արուել։ Անտառապատ Կարպատներում Վորոխտայից արեւմուտք Ռուսները գրաւել են մի բարձրունք, իսկ Կիրլիբաբայի շրջանում մի շարք բարձրունքներ, գերի վարելով մօտ 800 մարդ։

*Կովկասեան ճակատ.*—Այս շաբաթուայ ընթացքում մի շարք կարևոր դէպքեր են պատահել. Թիւրքական մի զօրախումբ գրաւել է Արտամետն ու Նօշխտիրէ-օղլին, որոնք գտնւում են Վանից հարաւ 2 ժամ հեռու։ Նոյեմբ. 17-ին թիւրքերն յարձակուել են Շուշանս գիւղի վրայ, որ գտնւում է Վանից երեք քառորդ ժամ հեռու դէպի հարաւ-արևելք, Վարագայ լեռան ուղղութեամբ։

Քղուց արևելք թիւրքերի մի շարք յարձակումները յետ են շպրտուել։

*Ռումանական ճակատ.*—Վալախիայում կռիւները շարունակւում են։ Դանուբի վրայ Զիմնիցայի մօտ գետն անցած թշնամին գետի միջին ընթացքում գրաւել է երկու դիրք։ Ռումաններն սկսել են նահանջել Օլթուց դէպի արևելք։ Ստարդխոխի ուղղութեամբ կատաղի կռիւ է մղւում։

Զիմնիցայից առաջանալով թշնամին մի շարք դիրքեր է գրաւել Կուլուգուրենիի խճուղու վրայ։

*Բալկանեան ճակատ.* — Իտալացիները շարունակում են առաջանալ Մոնաստիրից արևմուտք։ Վարդարի ձախ թևում Անգլիացիները յանկարծական աջող յարձակում են գործել։ Այս շրջանում դաշնակիցների համար աջող և կատաղի կռիւները շարունակւում են։

*Յունաստանում* կարևոր փոփոխութիւններ են եղել. խօսւում է որ ժամանակաւոր կառավարութիւնը պատերազմ է յայտարարել Բուլգարիային և Գերմանիային։ Տակաւին ստոյգ տեղեկութիւններ չկան։ Ծովակալ Ֆուրնիէն յայտնել է Յունաց կառավարութեան, որ եթէ մինչև դեկտեմբերի 1-ը յոյները չըյանձնեն զէնքերն ու ռումբերը, այն ժամանակ Յունաստանը կենթարկուի պաշարման և երկրի մի քանի մասը կը գրաւեն համաձայնութեան զօրքերով։

## Պետական կեանք

### ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՆ ԵՒ ՌՈՒՍ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

Պ. Դումայի այս նստաշրջանը իրերի բերմամբ աւելի մեծ հետաքրքրութիւն է առաջ բերում քան սպասելի էր։ Անգամ պարլամենտի այս մինիմալը—նուազագոյնը, որ կարելի է երևակայել,

պատմական անհրաժեշտութեամբ կարևորութիւն է ստանում։ Ռուս կեանքի «Կոլցովեան սայլը» այնպիսի մի փակուղու մէջ է մնացել, որ թէ կառավարութիւնը և թէ ռուս հասարակութիւնը կամայ-ակամայ ուշադրութեան առարկայ են դարձնում Դուման։ Երկու հակամարտ ուժերի մերձեցման և բաղխման կէտը Դուման է հանդիսանում։

Այդ հետաքրքրութիւնը առանձնապէս կենդանացաւ նրանով, որ ծովային և զինուորական նախարարները կառավարութեան տիրող «կուրսից»—ընթացքից անկախ եկան պաշտօնապէս յայտարարելու, որ երկրի համար փրկութեան ճանապարհը կառավարութեան և Պետ. Դումայի միասին ու համերաշխ գործնէութիւնն է։ Այնուհետև այս «անխօս» Դուման հենց իր «ակամայ լռութեամբ» մի տենդոտ հետաքրքրութիւն առաջ բերեց։

Այսօր Դումայով հետաքրքրւում և նրա «համրութեամբ» ջղայնանում են ոչ միայն հասարակութեան միջին—առաջադիմական և ազատամիտ խաւերը, այլ և պահպանողականները։ Նոյն իսկ Нов. Время-ն վախենում է, որ այդ ակամայ լռութիւնը «կառավարութեան համար մի ծանր դիլեմմա ստեղծի՝—մ ե ն ք և դ ո ւ ք»։ Նշանակալից և բնորոշ են պատմական ժամանակի մտայնութեան և տրամադրութեան համար, որ Մենշիկովի օրգանն էլ է գտնում, որ «վտանգը ժողովրդական այդ մտքերից ու զգացմունքներից չէ ծագելու, այլ այն երևոյթներից, որ ծնւում են այդ մտքերն ու զգացմունքները անտանելի ցաւերով»։ Ապա թերթը յիշեցնում է այն «օրհասական ծանր դասերը», որ տուին մեզ «մամուլի և հասարակութեան բռնի լռութիւնը»։

«Հոֆմայստէր Շտիւրմերին» փոխարինեց Տրեպովը և Դումայի նիստերը յետաձգուեցին մինչև ամսիս 19-ը։

«Հենց այն մեծ վայրկենին, երբ մեր պետական կեանքին տիրող մեծ ճգնաժամը իր լարման գագաթնակէտին է հասել—մի տարօրինակ, անբնական, ոչ առողջարար լռութիւն է տիրել, կամ աւելի լաւ է ասել՝ լռութիւն է հաստատուել երկրում», գրում է Русск. Вѣд.—կարծէք մենք ծանր հիւանդի սենեակում ենք գըտնւում. նրա մասին են խօսում, նրա մասին դատում և վճիռներ արձակում ու թագցնում նրանից, շարունակում է թերթը։ Ուստի և լռութիւնը հաւասարապէս անտանելի է դարձել բոլորի, անգամ Нов. Время-ի համար։

Միլիւկովի «դարձակէտ» կազմող ճառից առաջ Русск. Вѣд. գրում էր. «միայն երկու ճանապարհ կայ. կամ փրկել Ռուսաստանը՝ կամ Շտիւրմերի կաբինէտը։ Երրորդ ճանապարհ չկայ»։ Այսօր սակայն հարցը այսպէս է դրուած. կամ Դումայի հետ, կամ Դումայի դէմ։ Ռամկավար—սահմանադրական, այսինքն ռուս բուրժուազիայի կուսակցութեան պարագլխի ճառը ցոյց է տուել, որ անհատների հարց չկայ, այլ սիստեմի—ամբողջ կարգի։ Փըրկութեան ճանապարհը պատասխանատու նախարարութիւնն է, որով միայն կառավարութեան և հասարակութեան, մասնաւորապէս Դումայի մէջ համերաշխ ու անարգել գործակցութիւն կըստեղծուի։

Ուստի և Շտիւրմերի հեռանալով և Տրեպովի նշանակելով դրութիւնը չի փոխւում։ Այդ առթիւ Կոմս Կապնիստը ասել է Русск. Вѣд. թերթի թղթակցին. «Շտիւրմերի հեռանալը Դումայի համար մեծ յաղթութիւն է։ Այսու գործնականի մէջ հաստատւում է այն սկզբունքը, որ Դումայի մեծամասնութեան վստահութիւնը չվայելող նախարարները իրենց պաշտօնի մէջ մնալ չեն կարող»։ Միլիւկովը ասել է. «մեր դիրքը առաջուանն է. բըլոկի առաջացրած խնդիրը չի լուծուած։ Մենք պէտք է շարունակենք կռուել»։ Իսկ Կոնովալովի կարծիքով «դժուար է հասկանալ՝ թէ ինչու Շտիւրմերի մօտիկ աշխատակցին Դուման այլ կերպ պէտք է վերաբերուի քան Շտիւրմերին։ Տրեպովը մինչև այժմ յայտնի է եղել իբրև յայտնի հակառակորդ ընկերութիւնների և յանձնաժողովների (կոմիտէների)։ Ի՞նչ հիմք կայ կարծելու, որ նա մի օրում արմատապէս փոխեց իր հայեացքը»։

Այսպիսով դրութիւնը մնում է նոյնը։ Դումայի նիստերի ժամանակաւոր դադարով ճգնաժամը չի անցնում։ Ռուսաստանը պատմական օրեր է ապրում։ Ըստ Յ. Եաբլոնովսկու (Русск. Слово) ռուս հասարակութիւնը ա ն ց ե լ է Ռ ո ւ բ ի կ ո ն ը։ Ռուբիկոնի այս կողմն է ամբողջ ռուս հասարակութիւնը, զօրքը իր նախարարներով, մամուլը, իսկ այն կողմը բիւրոկրատիան իր հին, յետադարձ ընթացքով—կուրսով։ Երկուսի մէջ տեղը կանգնած է Պետական Դուման։ Կըկարողանա՞յ սա էլ անցնել Ռուբիկոնը։

Վ. Խ.

# Ներքին տեսութիւն

## ՄԵԾ ԻՇԽԱՆՈՒՀԻ ՏԱՏԵԱՆԱ ՆԻԿՈԼԱՅԵՒՆԱՅԻ ԿՈՄԻՏԷՏԻ ԿՈՉԸ

Յանձնաժողովը հետևեալ գրութիւնն է ուղարկել փախստականներին նպաստող կազմակերպութեանց, ինչպէս և Կ. Հ. Բ. Ընկերութեան։

Մեծ պատերազմը, որ մղում է ներկայումս մեր հայրենիքը, գրաւելու է, անշուշտ, ամենանշանաւոր տեղերից մէկը Ռուսաստանի պատմութեան մէջ։ Երբէք Ռուսաստանին չէ պատահել պաշտպանել իր պետական և ժողովրդ. ստացուածքը մի այդքան հզօր, յանդուգն և այնպիսի նենգ թշնամուց, որպիսին այս համաշխարհային պատերազմի մէջ հանդիսացաւ Գերմանիան, որ վաղուց պատրաստւում էր այդ պատերազմի համար և վարում է այդ նորագոյն պատերազմական տեխնիկայի ամբողջ խորամանկութիւններով, անգութ, անխնայ և միջոցների անխտրականութեամբ մի ժողովրդի, որ ամենից գեր ի վերոյ է դասում իր բիրտ ոյժը, ձգտելով համաշխարհային տիրապետութեան։

Այդ անօրինակ կռւում վճռւում են պետութեանց և ազգերի վիճակները. ուստի և նրա բոլոր երևոյթները, բոլոր հանգամանքներն ունենալու են ահագին խրատական նշանակութիւն մեր սերնդի ամբողջ մարդկութեան համար՝ նրա ապագայ կեանքում։ Ուստի մեր վրայ ծանրանում է կարևոր պարտականութիւն պահպանել նրա համար հնարաւոր լիակատարութեամբ այն ամենը, որ անհրաժեշտ է ազգերի կեանքի մէջ այդ նշանաւոր դարաշրջանի վեհապանծ նկարի պատմական ստեղծագործման համար։ Այդ գործն այնքան լայն է և բարդ, որ աջողութեամբ լուծելը հնարաւոր է միայն այն դէպքում, եթէ մեր վերապրած մեծ դէպքերի մասնակիցները և ժամանակակիցներն ամեն մէկը իր շրջանում մտցնեն այդ դէպքերը բնորոշող իրանց ունեցած տեղեկութիւնները, անձնական տպաւորութիւնները և դիտողութիւնները պատմական նիւթերի այն ընդհանուր ժողովածուի մէջ, որոնցից իր ժամանակին պատմական ստեղծագործութիւնը կը ստեղծի կենդանի և հրահանգիչ նկարագրութիւնը մեր այսքան նշանաւոր ժամանակի։

Ներկայ մեծ պատերազմին ուղեկցող բնորոշ երևոյթների շարքում անկարևոր տեղ չէ գրաւում և փախստականների երևոյթը։

Այդ երևոյթի զոհերի համար ցաւալի հետևանքների առաջն առնելը և, իբրև անհրաժեշտ պայման, նրա մանրազննին, բազմակողմանի ուսումնասիրութիւնը, կազմում է Ն. Կ. Բ. Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Կոմիտէտի գլխաւոր նպատակը համաձայն ժամանակի պահանջների։ Ձգտելով հնարաւորութեան չափ իրագործել իր գործունէութեան այդ ծրագիրը, Ն. Բարձրութեան Կոմիտէտը չէ կարող աննկատ թողնել և այն

խնդիրը հայրենի պատմութեան պահանջի վերաբերմամբ, որ առաջ է բերում և փախստականների վիճակի հարցը։ Այս խնդիրն է՝ աջակցել կազմել բաւական լիակատար ժողովածու ականատեսների տեղեկութեանց փախստականների շարժման, նրանց կեանքի, կրած փորձանքների և վիճակի մասին, քանի որ յիշողութեան մէջ դեռ թարմ են այդ երևոյթը նկարագրող տեղեկութիւնները և փաստերը։ Յանձնելով այդ նպատակի իրագործումը մի Առանձին բաժանմունքի՝ Յանձնաժողովը խնդրում է իր ճիւղերից, ինչպէս և նրան գործակից հասարակական, բարեգործական և ազգային կազմակերպութիւններից և մասնաւոր անձերից՝ ցոյց տալ Առանձին բաժանմունքին եռանդուն օգնութիւն վերոյիշեալ նիւթը հաւաքելու։

Այդ նիւթը կարող է լինել լուսանկարներ, նկարներ, տեղեկութիւններ, յիշողութիւններ, պատմուածներ և ակնարկներ վիպական ձևով և զանազան թուական տուեալներ փախստականների մասին։

Այդ յօդուածները պէտք է ստորագրած լինեն հեղինակներ իրանց մանրամասն հասցէներով։ Առանձին Բաժանմունքը խնդրում է չը քաշուել ձևի և շարադրութեան ոճի համար։ Մասնաժողովին հարկաւոր են միայն իրողութիւնները (факты)։ Ն. Բարձրութեան Կոմիտէտի համար հասարակական լայն խաւերի գնահատելի աշխատակցութիւնն այդ ուղղութեամբ երախտագիտութեամբ կը յիշուի ոչ միայն ժամանակակիցների, այլ և մեր հեռաւոր սերունդների կողմից։

Հաւաքած նիւթը, ինչպէս ձեռագիր նոյնպէս և տեղական մամուլում երևացածը, խնդրում եմ ուղարկել Ն. Կ. Բարձրութեան Առանձին Բաժանմունքին (Петроградъ, Литейный пр., 47), ուր այդ նիւթը կարգի կը բերուի, սիստեմի կը վերածուի և, հարկ եղած մշակութեամբ, կը գործադրուի փախստականների մասին հրատարակուելիք «Ժողովածուի» համար։

Յանձնաժողովի նախագահ՝ Ա. Նէյգարդ
Առանձին Բաժանմունքի նախագահ՝
Կոմիտէտի անդամ՝ Վ. Կոմարնիցկիյ

---

# ՆԵՐԿԱՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ *)

## ՍԱԿԱԳԻՆ

Ապագայի հեռանկարը չէ միայն, որ մեզի երկիւղ կը պատճառէ։ Զմոռնանք ներկան։ Ներկայիս ապրանքատէրերը պիտի մղուին թաքցնել իրենց ապրանքները՝ վնասով չծախելու համար, որու անմիջական հետևանքը կը լինի այն, որ կառավարութիւնը աւելի ևս պիտի ընդհանրացնի ու խստացնէ գրաւումը (riquisition), ինչ որ պակաս անիրագործելի չէ, որովհետև այդ վերաբերմունքով կառավարութիւնը, թերևս ակամայ կամ անկախօրէն, կը յառաջացնէ ոչ ցանկալի իրարանցումներ, որոնք ալ աւելի պիտի վնասեն արդիւնաբերութեան և առատութեան. բացի այդ՝ չպէտք է անտես անել նաև այն պարագան, որ իրարու հետ մրցելու են քաղաքացիական ու զինուորական իշխանութիւնները գրաւումի մէջ։ Ենթադրենք, որ զինուորական պարենաւորման իշխանութիւնը նկատի ունի գրաւելու մի կարգ պահեստներ. արդեօք քաղաքացիական իշխանութիւնը իրաւունք պիտի ունենա՞յ այդ պահեստներու վրայ ձեռք դնելու։

Գրաւման ու սակագնի հետևանքով արդիւնաբերութիւնն ու առուտուրը կանգ առնելով՝ բնականօրէն իշխանութիւնները կը պարտաւորուին ամբողջապէս իրենց ձեռքը առնել երկրի պարենաւորման գործը։ Աչքի առաջ ունենալով պետութեան ձեռնհասութիւնն ու գործունէութիւնը նման պարագաներում, դժուար չէ հասկնալ, թէ ինչպիսի անտեղի իրողութիւններու հանդէպ պիտի գտնուենք, իրողութիւններ, որոնք նոյնը պիտի լինեն նոյնիսկ ամենատարրական ու անհրաժեշտ նիւթերու համար։ Այս բոլորին կը հետևի, որ գրաւման ու սակագնի դրութիւնը ամենից աննպաստ ու վնասակար միջոցը պիտի լինի երկրի շահերու համար։

Կարելի է առարկել, թէ գէթ ցորենի կամ ալիւրի համար սակագին որոշելը կունենայ իր օգտակար հետևանքը։ Նախ որ ցորենի համար Ռուսաստանը նոյն վիճակը չունի, ինչ որ միւս կենսամթերքները, յետոյ եթէ պահ մի համաձայնենք այդ առարկութիւնն ընողներու հետ, բայց ոչ մէկ անգամ պիտի կրնանք հիմնաւոր համարել այդ առարկութիւնը միւս նիւթերու համար։ Բացատրենք մեր միտքը։

Ցորենի արդիւնաբերութիւնը մէկէն ի մէկ խոշոր տարբերութիւններու չի ենթարկուում և թէ կարելի է, գէթ մօտաւորապէս, իմանալ ցորենի հասոյթը և ըստ այնմ մի կարգադրութիւն անել և որոշել մօտաւոր արժէքը։ Բայց մի՞թէ կարելի է միւս բոլոր նիւթերու համար էլ ունենալ նախատուեալներ, որպէսզի կարողանանք մի մօտաւոր հաշիւ անել։ Վերցնենք կաթը. կաթի (նոյնպէս կարագի ու պանիրի) արդիւնաբերութիւնը կախուած է մի շարք պայմաններէ, որի քանակը կարող է բարձրանալ կամ պակսել, նայած թէ հողագործները օգտակար կը համարեն կաթ արդիւնաբերե՞լ, թէ՞ մացու տաւար խնամել։ Հաւկիթի արդիւնաբերութիւնը որոշ ամիսներու հետ է կապուած։ Կանաչեղէններն ու մրգեղէնները, ենթակայ են գլխաւորապէս կլիմայի ազդեցութեանը և այլն։ Այսպէս ուրեմն, զանազան տեսակի ու որակի կենսամթերքներու համար, իւրաքանչիւր տեղի մէջ ու տարուայ իւրաքանչիւր շրջանին, առանձին առանձին սակագին որոշելը կը յառաջացնէ շատ դժուարութիւններ, որոնք յատուկ չեն ցորենի համար։ Այստեղից կեզրակացնենք այն, որ եթէ կարելի է ցորենի համար սակագին սահմանել, բայց դա չի նշանակեր, որ սակագին պէտք է որոշել ամեն տեսակի կենսամթերքներու համար ալ։

Իսկ եթէ ցանկայինք խօսել ցորենի համար որոշուած սակագնի մասին, այն ժամանակ շատ դիւրին է ցոյց տալ անպատեհութիւններն էլ։ Այն օրէն, երբ ցորենը սակագնուեցաւ, ներքին ազատ առուտուրը (գէթ Կովկասի մէջ) յօդս ցնդուեցաւ. ինչո՞ւ, որովհետև անկարելի է բոլորին ստիպել, որ ցորենի խալւարը (30 փութ) ծախեն 120 ռուբլով փոխանակ 200—210 ռուբլու, ինչոր աւելի տարածուած է, քան թէ պարտադիր արժէքը։ Չենք կարող անտես առնել նաև այն պարագան, որ սակագնի դրութիւնը պատճառ եղաւ ցորենի չքացմանը։ Ճիշտ է, որ սակագինը միակ պատճառը չէ ցորենի անհետանալուն, բայց սակագինը նպաստեց այդ իրականութեանը, քանի որ գիւղացին թանգ է վճարում այն բոլոր միջոցներուն (սերմ, գործիք, աշխատող ձեռք և այլն), որոնք անհրաժեշտ են ցորենի արդիւնաբերութեան համար։

Սակագնի դրութեան կողմնակիցները կարող են առարկել, թէ այդ դրութիւնը միշտ շարունակուելու չէ. ընդհակառակը, սակագինը մի զէնք է կառավարութեան ձեռքին, որով նա կարող է պայքարել շահագործներու (speculateur) դէմ՝ վերջին րոպէին միայն։ Բայց մի՞թէ կարելի է յուսալ, որ կառավարութիւնը պիտի կրնայ այդ զէնքով դէմ դնել ամեն տեսակի միջոցներու, որոնք անսպառելի են շահագործողներու համար, որոնք, ներկայ բարոյական անկման շրջանին, իրենց գրպանի շահէն զատ ուրիշ ոչ մէկ սրբութիւն չեն ճանաչում։ Մենք կը կասկածենք նոյնիսկ, որ ամեն մէկ նահանգապետ կամ սակագին որոշող ժողովներ ունենան տնտեսական հարցերու համար բաւարար ծանօթութիւն կամ ձեռնհասութիւն, որպէսզի կարողանան այս կամ այն կենսամթերքի իրական արժէքը սահմանել։ Զմոռնանք նաև, որ նահանգապետներ կամ այլ անձեր ոչ մէկ անգամ ի վիճակի չեն լրջօրէն հետևելու իրենց վրայ դրուած այդ պարտականութեանը և, միւս կողմէն, թէ զանազան կապեր ինչ դերեր

*) Տե՛ս «Համբաւաբեր» № 46։

հայերն էին Ղարաբաղից և Նուխուց։ Յայտնի էր շուշեցի Կարապետ աղէր Գեանջեցեանը, որը շինել է քարվանսարայ, մէկ քանի տներ, ուր բնակւում են պաշտօնեաներ։ Հանգուցեալը վերին աստիճանի եռանդուն և խելօք անձնաւորութիւն էր և հեռատես։ Իւր կեանքի վերջի ժամանակները նա սկսել էր սիրել հողը, առաւ մի մեծ կալուածք, ուր քցեց այգի, կառուցեց մեծ շինութիւններ և այլն։ Նա վախճանուեց խորին ծերութեան հասակում, չհասնելով իւր վերջին նպատակին, կառուցանել մէկ փոքր եկեղեցի Աղդաշում, յատկացնելով մէկ շատ արժէքաւոր հողամաս։ Նորա ժառանգները, որոնք պարապում են իրանց հօր թողած մեծ կալուածքում և գիւղատնտեսութեամբ, պատրաստ են իրանց հօր կամքը կատարել՝ շինել եկեղեցի և նորան կից դպրոց։ Առայժմ այս տարուանից բացուել է փոքր դպրոց նրանց բնակարաններից մէկում ձրի և ժառանգները պատրաստ են մեծ մասնակցութիւն ունենալ դպրոցի ծախսերին։

Աղդաշի հայութիւնը մինչև Հայ-Թրքական ընդհարումն աւելի շատ էր և ունևոր. այժմ Հայ գաղութը փոքրացել է և աղքատացել։ Հարստութիւնը այժմ անցել է տեղական Թուրք ազգաբնակութեան. Նա ցոյց է տալիս կուլտուրական ձեռնարկների նախաձեռնութիւն, կառուցանելով չալթուք մաքրելու ջրաղացներ, բամբակ մաքրելու շոգեմեքենաներ։ Այդ տեսակ մեքենաներ կան մի քանիսը Աղդաշում։ Արէշի գաւառի ազգաբնակութիւնը նոյնպէս տագնապի մէջ է. ամեն բան թանգացել է, օրինակ հացի գրուանքան արժէ 12 կ.։ Աւելի մեծ նեղութեան մէջ են լեռնաբնակները, քան դաշտաբնակները, որոնք ամեն տեսակի՝ ցորենի, բրինձի, բամբակի և այլն վարուցանքս ունին։ Բաւական է ասել, որ օրինակ դաշտաբնակ հայ գիւղացիք, որոնք աւերուել էին Հայ-Թրքական ընդհարման ժամանակ և պահուել էին լեռնաբնակ հայերի միջոցաւ, այժմ աւելի լաւ պայմանի մէջ են համեմատած վերոյիշեալ հայերի հետ։ Մի մխիթարական երևոյթ, որ կայ գաւառում, այդ մանր վարկի տարածումն է, որը շատ մեծ յաջողութեամբ ծաւալւում է գաւառիս թէ Թուրք և թէ հայ գիւղերում։ Առայժմ այսքան։

Բժ. Բ. Աղասարեան

10 նոյեմբ. 1916

## ԱՆՈՐԱԿԵԼԻ ՎԱՐՄՈՒՆՔ

«Кавк. Слово»-ի № 251-ում կարդում ենք. «Кут. В.» ասելով Բաթումի քաղաքագլուխ Կրինեցկին ուղղել է Միքայէլեան բերդի հրամանատար Բարանովիչին հետևեալ նամակը.

«Ողորմած տէր, Ս. Միխայլովիչ. Հոկտ. 11-ին եկաւ ինձ մօտ քաղ. վարչութեան կողմից Դումայի իրաւասու Ա. Յովսէփեան Մնդոյեանցը և շնչասպառ հեծկլտանքով յայտնեց թէ փոխ-գնդապետ Սուսլովը իրան վիրաւորել է խօսքով ու գործով հետեւալ հանգամանքներում. Առաւօտեան ժամը 11-ին գալիս է նրա գրասենեակը, որ գտնւում է Տորգովայա փողոցում իր սեփական տանը, ռեկվիզիցիոնական մասնաժողովը, այն է՝ նախագահ գնդապետ Ալէքսանդրովը և փոխ-գնդապետ Սուսլովը։

Յանձնաժողովի նախագահը յայտնում է Մնդոյեանին, որ նրա տունը ենթարկւում է ռեկվիզիցիայի զինուորական վարչութեան կարիքների համար և ինքը գնում է նոտար Բէստավաշվիլու բնակարանը, նոյն տան մէջ, թողնելով այնտեղ փոխ-գնդապետ Սուսլովին, որ հրամայում է իրան ընկերացող զինուորներին դուրս շպրտել գրասենեակից իրերը, գրքերը և վաւերագրերը (դոկումենտներ)։ Մնդոյեանցը դիմում է փոխ-գնդապետ Սուսլովին խնդրելով, որ ինքը դատարկէ գրասենեակը (կոնտոր), որպէսզի դրամը և արժէքաւոր վաւերագրերը չը կորչեն, բայց պատասխանի փոխարէն ստանում է փոխ-գնդապետ Սուսլովից կոպիտ հայհոյանք, և երբ Մնդոյեանը խնդրում է ներկայ եղողներին վկայ լինել այդ վիրաւորանքին, այն ժամանակ Սուսլովը ապտակում է նրան։

«Յայտնելով այս մասին ի գիտութիւն ձերդ գերազանցութեան, համոզուած եմ, որ քաղաքում յարգանք վայելող մարդուն հասցրած այս վիրաւորանքը այնպիսի խոր զայրոյթ կը պատճառի ձեզ, որպիսին պատճառել է քաղաքի ամբողջ բնակչութեանը, առանց ազգութեան խտրութեան, թէև բնակչութեան մի մասը, հայերը, ինչպէս այդ մասին յայտնեց սոյն թուի 11-ին ինձ մօտ եկած մի պատգամաւորութիւն, արդարացի կերպով ամենից աւելի վրդովուած է զգում իրեն, որովհետև փոխ-գնդ. Սուսլովը թոյլ է տուել իրեն, Մնդոյեանցի ասելով, պոռալ նրա վրայ, ասելով. «Вы армяне, всѣ подлецы и мошенники»։ (Դուք հայերդ, բոլորդ սրիկայ էք և խարդախ)։

«Մանր, ճնշող զգացումով գրում եմ ձեր գերազանցութեանն այս տողերը. այն ժամանակ, երբ մեր փառապանծ զօրքը մարտնչում է այնտեղ, առաջապահ դիրքերում, հայրենիքի լաւագոյն ապագայի համար, երբ ամբողջ բազմացեղ Ռուսաստանը միացել, ձուլուել է զօրքի հետ իբրև հզօր ընտանիք, այստեղ, մօտաւոր թիկունքում, այդ զօրքի ներկայացուցիչներից մէկը ծեծում է խաղաղ, ամենից յարգուած մի քաղաքացու, որ դեռ անցեալ տարի, ձեր նախորդի առաջադրութեամբ, ստացել է Թագաւորից շնորհակալութիւն իր գործունէութեան համար յօգուտ պատերազմի զոհերի։

«Ցաւալի է հայրենիքի այս ծանր փորձանքների օրերում՝ շեշտել այսպիսի վշտալի փաստեր, որոնք երկպառակութիւն են սերմանում հասարակութեան մէջ, բայց ինձ՝ իբրև քաղաքի ազգաբնակութեան ներկայացուցչի, անհնարին է անուշադիր թողնել իրողութիւնները և չը խնդրել իշխանութիւնից պաշտպանել մարդկային արժանապատւութեան ոտնակոխ եղած իրաւունքները. բոլորովին համոզուած, որ դուք ինքներդ, իբրև փառապանծ զօրքի պարագլուխներից մէկը, կը կարողանաք պաշտպանել նրա բարի անունը, մաքրելով նրան այն անձերից, որոնք չեն հասկանում իրանց վեհ կոչումը. պատերազմի երկու տարուայ ընթացքում զօրքը դառել է կուռք ժողովրդի համար, և նրա վրայ բիծեր չը պէտք է լինեն»։

Այս միջադէպի առթիւ կայացել է Բաթումի բորսային յանձնաժողովի արտակարգ նիստ իշխան Մ. Նակաշիձէի նախագահութեամբ։

Լսելով Ա. Մնդոյեանի գանգատը և արտայայտելով վերջինիս ամենախորին համակրութիւն՝ Բաթումի բորսային յանձնաժողովը որոշեց ընդունել իր անդամ Ս. Մդիվանու առաջարկը և այս առաջարկութեան կատարումը յանձնել մի առանձին պատգամաւորութեան, յանձնաժողովի օրագրի պատճէնը յանձնել Պետական Դումայի անդամ Ջխէնկէլուն և խնդրել նրանից, որ այս օրագրի բովանդակութիւնը յայտնէ Պետական Դումայի ամբիոնից։

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

Նոյեմբերի 11-ին Թիֆլիսի Երաժշտական Սալոնում տեղի ունեցաւ Հայ Գրողների Ընկերութեան հերթական դասախօսութիւնը։ Խօսեց բժ. Բոնապարտեանը, նիւթն ունենալով «1908-ի թիւրքական սահմանադրութիւնից յետոյ տաճկահայերի ազգային կեանքը»։

**Ծանօթ. խմբ.**—Նոյեմբ. 4-ին պ. Մ. Աբեղեան դասախօսեց «Գրիգոր Նարեկացու» մասին. այդ նոյն դասախօսութիւնը եղել է նաև անցեալ տարի Ազգագրական Ընկ. դահլիճում, որի բովանդակութիւնը ժամանակին տպուեց «Համբաւաբերում»։

Դասախօսութեան սկզբում բժիշկը հարևանցի մի ակնարկ ձգեց նախքան թիւրքական սահմանադրութիւնը, արևմտահայերի հասարակական և կրթական վիճակի մասին։

1908-ից յետոյ, երբ Թիւրքիայում սահմանադրութիւն հռչակուեցաւ, տաճկահայերը շատ ողբալի կացութեան մէջ էին գտնւում. ժողովրդի տնտեսական դրութիւնը քայքայուած էր, քիւրդ բէկերի և աղաների հարստահարութեանց պատճառով։ Կուլտուրական կեանքը դադարել էր՝ հասարակական և գրական նշանաւոր գործիչների երկրից վտարուած լինելուն համար։ Բայց սահմանադրութեան հենց առաջին օրերից՝ հայ ժողովուրդը խանդավառուեցաւ և հետզհետէ վտարանդի գործիչները վերադարձան երկիր և սկսուեց կեանքը եռալ։

Հայ գիւղացութիւնն ազատ շունչ քաշեց որոշ չափով և վերականգնեց իւր տնտեսութիւնը։ Խարբերդի և Կիլիկիոյ շրջանի Հայ գիւղացութիւնը շնորհիւ իւր ժրաջան և վաստակալից աշխատասիրութեան սկսաւ հարստանալ կամաց կամաց և տնտեսական այնպիսի հարուստ և արգասաւոր կեանք ստեղծեց իւր համար, որ ամեն կողմից սկսան նախանձել, և Ադանայի կոտորածների բուն պատճառներից մէկը պէտք է համարել Կիլիկիոյ հայութեան բարգաւաճ գոյավիճակը։

Կրթական գործը տաճկահայերի մէջ շատ առաջ է գնացել. թէ ընիկ ժողովուրդը, թէ Եգիպտոսի Միացեալ Ընկերութիւնը, թէ բողոքական և կաթոլիկ միսիոնարութիւնը մեծ զարկ են տուել կրթութեան և դաստիարակութեան։ Պոլսից մինչև Կիլիկիա և մինչև Վան դպրոցներով և կուլտուրական այլ հաստատութիւններով ցանցուած էր երկիրը։

Խարբերդի «Եփրատեան», Պոլսոյ «Ռոբերթ» կոլէճը և կաթոլիկների բացած գիտական մասնաճիւղեր մեծ զարկ տուին ուսման և դաստիարակուած երիտասարդութեան պատրաստուելուն։

1908-ի Սահմանադրութիւնից յետոյ՝ միակ արիւնոտ դէպքը, որ պատահել է, այդ Ադանայի զարհուրելի կոտորածն է։ Այդ կոտորածը երիտասարդ թիւրքերի սարքած մի ոճիրն էր, որ նպատակ ունէր կուլտուրապէս և տնտեսապէս զարգացած Կիլիկիոյ Հայ ժողովուրդը բնաջինջ անել և ոչնչացնել։

Ադանայի կոտորածներից յետոյ Կիլիկիոյ հայութիւնը սկսեց գաղթականութեան ուղին բռնել, դէպի Ամերիկա, Եգիպտոս և այլուր։ Այդ գաղթը աւելի ևս ծաւալուեցաւ և քրոնիկական բնոյթ ստացաւ։

1914-ին, երբ պայթեցաւ Եւրոպական պատերազմը, թիւրք կառավարութիւնն ևս, հակառակ հեռատես մարդկանց յորդորներին, պատրաստւում էր նետուելու համաշխարհային հրդեհի մէջ։ Հայ ժողովուրդը արդէն նախազգում էր իւր ճակատագիրը և այդ զգացումը աւելի ևս արմատացաւ, երբ սկսուեց ռուս-տաճկական պատերազմը։

Թիւրք կառավարութիւնը պատերազմի հենց սկզբից՝ սկսեց տնտեսապէս քայքայել հայ ժողովուրդը, տանելով ու կողոպտելով նրա ինչքը՝ պատերազմական կարիքները հոգալու համար։ Հայ գիւղացին զրկուեց բոլորովին իւր բոլոր շարժական ստացուածքներից և քայքայումը համաճարակի պէս ծաւալուեց երկրի մէկ ծայրից միւսը։

Տնտեսապէս քայքայելուց յետոյ՝ կառավարութիւնն սկսեց սիստեմաթիկ գործադրել գերման կառավարութեան հետ մշակած հայկական կոտորածների դիւային ծրագիրը։

Սկսուեց տեղահանութիւն և կոտորած, որի պատճառով Թիւրքահայ ժողովրդի մեծագոյն զանգուած զոհ գնաց սարսափելի կոտորածին։

Դասախօսը պատմեց նաև իր անձնական մի քանի տպաւորութիւնները՝ կոտորածների վայրերում։

Դասախօսութիւնից յետոյ տեղի ունեցաւ զրոյց, որին մասնակցեցին պ. պ. Թորգոմեան, Քեալաշեան և Գազանջեան։

Գ. Գազանջեանը ցոյց տուեց հայկական ջարդերի պատճառը, որպէս թիւրք պետականութեան հետապնդած դարաւոր ծրագիրը։

Գ. Ծ. Թորգոմեան՝ բացատրեց սահմանադրութիւնից յետոյ թիւրքահայ գրականութեան ծաղկեալ վիճակը, որ կարող էր մեծ յոյս և ապագայ խոստանալ։ Ապա երևան հանեց տոհմային դաստիարակութեան արժէքն ու ազդեցութիւնը արևմտահայերի մէջ։

Հետևեալ անգամին պիտի խօսի պ. Սուրխաթեան թիւրքահայ բանաստեղծութեան նոր ուղղութիւնների մասին։

X

## ԿՈՎԿԱՍԻ ՆԱԽՈՐԴ ՓՈԽԱՐՔԱՅ ԿՈՄՍ ՎԱՐԱՆՑՈՎ-ԴԱՇԿՈՎԻ ՅՈՒՇԱԳՐԻՑ *)

### Մահմեդականների զինուորագրութիւնը

Վերջապէս մահմեդականների շրջանում ռուս պետականութիւնը և աշխարհահայեացքը ընդհանրապէս տարածելու իսկական միջոցը ես համարում եմ Կովկասի լեռնականներին և Թուրքերին զինուորագրութեան կոչելը, թէկուզ սկզբի տարիները առանձին կազմուած զօրամասեր, նման Խրիմի նախկին Թուրքական զօրամասերի, Դաղստանի հեծելագնդի և այլն։ Այդ հարցը յանձնուած էր Զինուորական Նախարարութեան ի մօտոյ մշակելու համար, սակայն վերջինս, ցաւ ի սիրտ պէտք է ասեմ, բաւականացաւ մինչև օրս միայն գրագրութիւն վարելով, որոնցում, սակայն, սկզբունքային առարկութիւններ ես չը գտայ։

### Ռուս լեզուի կացութիւնը

Գալով Կովկասի քաղաքական դրութեան գնահատման՝ ամենից չպէտք է մոռանալ նրա առանձնայատկութիւնները և կիրառել նրա վերաբերութեամբ նոյն նկատառումները, որ թելադրում են մեր միւս ծայրագաւառների իրերի կացութիւնը։ Կովկասում, օրինակ, լեզուի հարց բոլորովին գոյութիւն չունի, ինչպէս դպրոցներում, նոյնպէս և հասարակական հիմնարկութիւններում։ Բոլոր ազգութիւնների ներկայացուցիչները ձգտում են իրենց որդոց ռուսերէն սովորեցնել, գնահատելով միևնոյն ժամանակ երեխաներին մայրենի լեզուով նախապատրաստելը։ Ապացոյցներ—որքան կուզէք. և ընդհակառակը, չի կարելի մատնացոյց անել ռուս լեզուի դասաւանդութեանը հակառակելու դէպքեր։ Ահա ձեզ կենդանի օրինակ՝ հայոց եկեղեցական դպրոցները, ուր ռուսաց լեզուի դասաւանդութիւնը բոլորովին պարտաւորիչ չէ, բայց ուր դասաւանդւում է այն, թէև առայժմ, թերևս ոչ այնքան գրագիտօրէն։

Հազուադէպ չեն, երբ ծնողները գիւղական ուսուցիչներին հարցնում են, թէ ինչու այդքան ուշացւում է դասատուութիւնը ռուս լեզուով անցնելու։ Հասարակական կազմակերպութիւնների և հիմնարկութիւնների նիստերում վիճաբանութիւնները, չնչին բացառութեամբ, ռուսերէն են լինում, և փոքր ի շատէ ռուսերէն խօսող ամեն մի հռետոր աշխատում է ռուսերէն խօսել. իսկ եթէ հարկից ստիպուած ճառը տեղական լեզուով է արտասանուել, սովորաբար անմիջապէս թարգմանւում է ռուսերէն, որովհետև ներկայ եղող միւս ազգութիւնների ներկայացուցիչները պահանջում են այդ, յայտնելով, որ այդ լեզուն չը գիտեն։ Մինչև անգամ միևնոյն ազգութեան պատկանող անձնաւորութիւններից բաղկացած հասարակական ժողովներում, եթէ մասնակցողները կրթութիւն ստացած մարդիկ են, ռուսաց լեզուն միշտ գերակշռում է։ Ընդհանրապէս պէտք է ասել, որ Կովկասի ազգութիւնների համար ռուսերէնը համարւում է կուլտուրական

*) Տես «Համբաւաբեր» № 46։

լեզու. ռուսաց գրականութիւնը լուրջ ազդեցութիւն է անում տեղական գրողների վրայ, որոնք այդ գրականութեամբ են կրթուել. իսկ ռուս մարդիկ Կովկասցու աչքում համարւում են այն կուլտուրայի տարածողները, որին բոլոր սրտով կը ցանկար միանալ, ըստ որում հարևան պարսկական և տաճկական կուլտուրաները, որի ազդեցութեան տակ նա երբեմն գտնւում էր, նրան այլես անհարազատ են և նրա կարիքները չեն բաւարարում։

## Տեղացիների Պետական ծառայութիւնը

Կովկասի բոլոր ազգութիւնների ներկայացուցիչները ձըգտում են պետական ծառայութեան մտնել՝ ինչպէս զինուորական, նոյնպէս և քաղաքացիական, և պաշտօն ստանձնելով, իրենց պարտականութիւնը լաւ կատարող ծառայողներ են լինում։ Ոչ մի լուրջ հիմք չկայ տեղացիներին պետական ծառայութեան ընդունելուց հրաժարուելու։ Ծառայութեան չընդունելը կամ ծառայութիւնից արձակելը՝ իրանց ցեղակիցների կողմից միշտ սըրտմտութեամբ է ընդունւում, որ և վիրաւորում է նրանց ազգային ինքնասիրութիւնը։ Ուստի պէտք է ամեն անգամ պարզ բացատրել մերժելու կամ ծառայութիւնից արձակելու պատճառները, և անհրաժեշտ է որ Կովկասի բոլոր ազգութիւնների ներկայացուցիչներին էլ միատեսակ վերաբերմունք ցոյց տրուի, միայն ծառայութեան շահը ի նկատի ունենալով։ Պետական ծառայութեան կոչելիս՝ պէտք չէ խտրութիւն անել ազգութիւնների մէջ։ Սակայն ինձնից առաջ Կովկասում գործադրուող ձևի արձագանգները դեռ այն աստիճանի թարմ են, որ երբ հային կամ վրացուն արձակում են պաշտօնից՝ տեղական մամուլում այդ վերագրւում է նրա ազգայնականութեանը, ինչպէս և ռուսին արձակելը—ռուսական ծայրայեղ ազգայնական թերթերում—նրա ծագմամբ։ Կշտամբանքների այս զուգադիպումը, որոնք լինում են իրար հակառակ կողմերից, արդէն ինքն ըստ ինքեան ցոյց են տալիս, թէ որչափ անհիմն են։

Տ

(Կը շարունակուի)

---

## ՀԱՅ ԲԺԻՇԿՆԵՐԻՆ

*ԸՆԿԵՐՆԵՐ,*

1915-ի աշնան սկզբի օրերին տաճկահայ գաղթականութեան առաջին ալիքները եկան հասան Բագու։ Մանուկներ էին դրանք, վտիտ ու հիւանդ, անօթի ու շուար մանուկներ։ Սրանց հետևեցին հասակաւորներ, գլխաւորապէս կանայք, նոյնպէս սովալլուկ ու մերկ, և սեպտեմբերին արդէն Նաւթաշխարհն ունէր իր տաճկահայ գաղութը՝ 1500—1600 հոգուց բաղկացած։

Բոլոր նրանք, որոնք աւանդաբար արդէն հասարակական գործ են կատարում քաղաքիս մէջ և նրանք, որոնք ճիգն ու ձըգտում ունէին այդպիսի գործ կատարելու, կազմակերպեցին Բագուի Գաղթականական մարմինը մեր տարագիր եղբայրներին ձեռքից եկած օգնոյթը հասցնելու համար։ Հայ բժիշկները, մինչ այդ ցիրուցան ու անկազմակերպ, հիմք դրին այդ օրերին Բագուի Հայ Բժիշկների ընկերութեան և իբրև գաղթականական մարմնի առողջապահ մասնախումբ՝ իրենց հսկողութեան ու խնամքի տակ առան տաճկահայ փախստականների բժշկական գործը։

Վաթսունից աւելի անդամ թուող ընկերութիւնը ունէր իր նախագահոյթը*), ընդհանուր ժողովները, յանձնախմբերը ևայլն։ Նրա ձեռներէցութեամբ, աշխատանքով և նիւթական օժանդակութեամբ սկիզբ առաւ և շարունակում է ցայսօր իր գոյութիւնը Հայոց գիւղի գաղթականական հիւանդանոցը։ Այդ հիւանդանոցը կանոնաւորեց փախստականների երթևեկ բուժման գործը և կըցելով իր ջանքերը գաղթականական կոմիտէի ջանքերին, պատշաճ բարձրութեան վրայ դրեց մահացունների առողջապահիկ կացութիւնը։

Այդպէս էր Բագուի հայ բժիշկների հաւաքոյթի (կոլլեկտիւի) գործունէութիւնը 1915-ի աշնանը և 1916-ի առաջին կիսին։ Ժամանակի ընթացքում սակայն այդ հաւաքոյթի (կոլլեկտիւի) առջև ծառացան մի շարք խնդիրներ (պրօբլեմներ), կամ աւելի ճիշտ, մի հատ խնդիր (պրոբլեմ), որն աւելի ընդհանուր էր և հրամայական, քան գաղթականներին բժշկական օգնութիւն հասցնելն էր։

Al hoc առաջացած կազմակերպութիւնը կամեցաւ դառնալ մի մնայուն հասարակական օրգան հասարակական լայն ֆունկցիաներով։ Ժամանակաւոր գաղթականական մարմնի առողջապահ խումբը իր ամբողջ կազմով մտաւ (1906-ի յուլիսին) Բագուի Հայոց Կուլտուրական Միութեան մէջ և դարձաւ սրա՝ իր ասպարէզի մէջ անկախօրէն գործող՝ բժշկական բաժանմունքը (սեկցիան)։ Տեղական գաղթականներին բժշկական օգնոյթ հասցնելու գործը դիտուեց շատ անձուկ և տեղի տուաւ նոյն գործը իր մէջ պարփակող, բայց աւելի լայն մի ծրագրի, որի էութիւնը հայ ժողովրդի ֆիզիքական կարողութեան պահպանումն ու զարգացումն է։

Ընկերներ, ոչինչ կայ աւելի օրինական և տրամաբանական քան բնաշրջումը։

Հասարակայնօրէն խորհող հայ բժիշկը ճանաչում է մեր ժողովրդական կեանքը ոչ միայն գրքից ու լրագրից։ Նրան յայտնի են այդ կեանքի այնպիսի ծալքեր ու անկիւններ, որոնց մասին հասկացողութիւն չունի մի ուրիշը։ Ամեն օր ու ամեն ժամ նա դիտում է կսկիծով հայ ժողովրդական մարմնի մեծ խոցերն ու արատները, տեսնում է աստիճանական ծիւրումը այդ մարմնի, նրա հիւթերի սպառումն է տեսնում և իր արհեստով արդէն վարժ իրապէս (ըէալօրէն) խորհելու, նա գալիս յանգում է այն եզրակացութեան, որ հայ ժողովրդի ֆիզիքական գոյութեան պահպանումը խնդիրների խնդիրն (պրոբլեմների պրոբլեմն) է մեր կեանքի։ Իր մասնագիտական դիտողութիւնները այդ հիմնական թէզիսի մէջ հասարակայնօրէն բանաձևելուց յետոյ՝ նա փնտռում է բնաանհրաժեշտաբար մի կազմակերպչական ձև իր միտքը՝ խօսք և ձգտումը՝ գործ դարձնելու համար։

Արդ Բագուի Հայոց Կուլտուրական Միութեան Բժշկական սեկցիան որոշում է իր տակաւին թոյլ ուժերը նուիրել այն գործին, որը համարում է ամենից մեծ բոլոր հայ գործերի մէջ, այն է՝ հայ ժողովրդի ֆիզիքական գոյութեան պահպանման։

Իր նպատակը սիստեմատիկօրէն իրագործելու համար Կ. Մ. Բժշկական բաժանմունքը (սեկցիան) հիմա և եթ ձեռնարկում է հրատարակութեան 1) մի ժողովրդական պարբերականի, ուր հանրամատչելի կերպով պիտի պարզաբանուին հայ ֆիզիքական կացութեան վերաբերեալ խնդիրներ և 2) մի գիտական աշխատութեան, որը պիտի ի մի ժողովի և լուսաբանի մասնագիտօրէն այդ կացութեան վերաբերող փաստական տուեալները։

Ապա Կ. Մ. Բժշկական սեկցիան պիտի աշխատի 3) ստեղծել հայ գաւառներում, քաղաքներում իր նպատակները հետապնդող ընկերութիւններ, 4) պիտի կազմակերպի Բագուի շրջանում և այլ վայրերում հրապարակային դասախօսութիւններ հասարակաբժշկական նիւթերի մասին, 5) բժշկական խմբեր պիտի ուղարկի գաւառը համաճարակների դէմ պայքարելու համար, 6) պիտի հրաւիրի հայ բժիշկների և բնագէտների համագումարներ և այլն։

Մեր ժողովրդական պարբերականը*) («Առողջ Կեանք» ամսագիրը) չպիտի ունենայ բնոյթը սովորական առողջապահիկ հը-

*) Presidium=դիւան կամ ատեան։ Խմբագր.

*) Գիտական ժողովածուի և մեր մնացած ձեռնարկութիւնների մասին մենք կը դիմենք հայ բժիշկներին մի յատուկ գրութեամբ։

րատարակութիւնների։ Հիւանդութեան և առողջութեան, ֆիզիքական զօրութեան ու անկարութեան խնդիրները (պրոբլեմներ) դիտելով հայ ժողովրդական շահի պրիզմայի միջով, նա պիտի աշխատի ազդել ոչ միայն մեր ֆիզիքական մշակոյթի, այլ և առհասարակ հայ մտայնութեան վրայ։

Այսպէս գուցէ կուզէինք որ լինէր մեր «Առողջ Կեանքը», իսկ թէ ինչպէս կը լինի նա իրապէս, դա կախուած է արդէն ձեզանից, ընկերներ։ Ձեզանից է կախուած նոյնպէս և մեր բոլոր միացած ձեռնարկութիւնների յաջողութիւնը։

Եթէ դուք, դիտելով հայ կեանքը, եկել յանգել էք մեր վերը բանաձևած եզրակացութեան և ցանկութիւն ունէք կազմակերպելու ձեր տկաւին անջատ ու ցիրուցան ճիգերը, եթէ կամենաք, միանալով ձեր վայրերում, յարել մեր արդէն գոյութիւն ունեցող ընկերային կորիզին, այն ժամանակ թերևս յաջողուի մեզ ստեղծել մի աւելի լայն միութիւն բնագզօրէն խորհող հայ անհատների, որի օրգանը՝ «Առողջ Կեանքը» վայել կը լինի թէ մեր ապրած պատմական վայրկեանի (մոմենտի) մեծութեան, թէ այլ պատասխանատուութեան, որը մենք ունենք այս օրերին հայ ժողովրդի առաջ։

Սրանով կ. Մ. Բժշկական բաժանմունքը (սեկցիան) խնդրում է ձեզնից ամենիցդ աջակցել իր դրուած նպատակների իրագործման առհասարակ և ի մասնաւորի ջանք ու ճիգ չխնայել, աշխատակցելով «Առողջ Կեանք»-ին*) և տարածելով այն, դնելու մեր հայ բժիշկների ժողովրդական օրգանը պատշաճ բարձրութեան վրայ։

Խմբագրութիւն «Առողջ Կեանք»-ի

Բագու, 1916 թ. նոյեմբեր

*) Ամսագրի առաջին համարը լոյս կտեսնի 1917 թ. յունուարի 1-ին։ Հասցէն՝ Баку, Армянскій Культурный Союзъ, редакція „Арохчъ Кянкъ". Մանրամասն յայտարարութիւն կը տպագրուի դեկտեմբերի սկիզբներին հայ թերթերի մէջ։

---

## ԳԱՒԱՌ

ԱՂԲԻԼԱՍԱ և ՍԱՐԻԱՐ (Ալէք. գաւ.), 20 հոկտեմբերի.— Այս գիւղերը, որ շինուած են Ջաջուռ կայարանից մի վերստ հեռու, կարծես խուրքանչիւր մի երկաթուղով ճանապարհորդող հայի հեռուից յիշեցնում է հայկական այն հին գիւղը, հին օջախով ու նահապետով, հին կենցաղով ու սովորութիւններով, ինչ նախապատմական շրջանում է եղել։

Դեռ երէկ լաւ էր, Տէր-Թողիկի դպրոցը բաց, շէնքը կանգուն ու աշակերտներից մէկն էլ բէն-այբբէնն էր դաս տալիս։ Իսկ այսօր. շէնքը աւեր, դպրոցը փակ։ Ցաւո՜ք։

Հիւանդութիւնը ծայր է առել ողջ գիւղը ու լափում է երիտասարդ թարմ ուժերը։ Օրէնը մէկը չէ, երկուսը չէ, այլ մի քանիսը։ Անգութ տիֆը իր կատարեալ հունձն է անում։ Բժիշկ չըկայ, դեղ չկայ,—չէ՞ որ Աստծու կամքն է, ինչ կարող ենք անել։ Մեռնեմ իրա սուրբ զօրութեանը. ինչ Աստուածածինը բերել ենք, ասում է գիւղացին, էս անտէր ցաւ ու չոռը դադարել է։ Վարժապետ ջան, Աստուած քեզ էլ կեանք տայ, մեր տէրտէրին էլ. լաւ ջերմեռանդ պատարագ էրէց, մատաղ կտրինք։

Ու ես մտածում եմ ցաւ ու չոռ անցաւ։ Լաւ էր սրանց վրայ ծաղրում անպիտան Սողոմոնը.—Վարժապետ ջան, մի օր գընացի Սարիար, մէկը կը հարցնէ, տիրացու Սողոմոն, կըսեն ռուսն ու թուրքը կը կռուին, օղորթ է։ Գնում եմ Աղբիլիսա։ Կիսաշէն սև դպրոցն է, որ դեռ ողբում է առաջդ։ Օր աւուր թափուել են ու թափուել քարերը։ Կը շինո՞ւի նորից... Բայլերս ուղղում եմ վաղեմի ծանօթ հոգաբարձուի տունը։ Անմիջապէս խօսում եմ կիսաշէն դպրոցի մասին։

—Հա՛, վարժապետ ջան, մեծ ամօթանք է, որ էսքան տարի յուսումարանի պատերը կիսատ են, մեզ՝ ատչուժդենու փող է դուրս գալու 6000 մանէթ, կըսեմ բալի ժողովրդին համոզենք կէսը յուսումարանի վրայ ծախսենք գլուխ բերենք։

—Այս տարի դպրոցն բացելո՞ւ ենք։

—Ձը գիտեմ, ինչ ըսեմ, մոլըրուել ենք, էս տարի էլ էնքան թանգ է վարժապետը, օր անունը տալու չի էղնի։ Մեր Զուրաբին էն օրը 450 մանէթ տուինք, չեմ ու չում էրաւ. հլա տեսնենք ինչըղ կեղնի։ Ախպէր, մեզգրելու էլ չէ ձեզի, յամեն բանթանգցել է, գեղի յառաջուայ խէր ու բարաքեաթը չի մնացել։ Կռիւը մէ կողմէն է ճնշում, գաղթականը մէ, էս քանի օր է կերթանք հոգևոր կառավարութէնը, վարժապետ չի չարուի։

Տ. Շահբազեան

—

ՋԱՋՈՒՌ, 1 նոյեմբերի.—Այսօր երեկոյեան ուժեղ երկրաշարժ պատահեց մի բոպէ հարաւից դէպի հիւսիս, փլուեց մի տուն. շատ տներ ճեղքուածքներ ստացան. մի մարդ ուշաթափ եղաւ։

---

ՇՐՎԻՆԱՆՑ (Ղափան), 28 հոկտեմբերի.—Ղափանի մեկուսացած շրջանը եթէ մի մխիթարական երևոյթ ունի, այդ նրա մի շարք դպրոցներն են, որ բացուած են կ. Հ. Բ. ընկերութեան, Բագուի Արամազդ ընկերութեան և բարեգործ անհատների միջոցներով։ Այդպիսիներից մէկն է Շրվինանց գիւղի Հ. եկ. ծխական-երկդասեան-երկսեռ դպրոցը, որ 15 տարուց ի վեր անընդհատ պահպանում է իւր գոյութիւնը թիֆլիսաբնակ կ. Գասպար Տէր-Մարգարեանի նպաստով։

Շրվինանց են յաճախում բացի շրջակայ 6—7 գիւղերի ուսումնածարաւ մանուկներից՝ նաև հեռաւոր գիւղերի պատանիներ, որոնք աւարտելով իրենց ծննդավայրում գտնուող միդասեան դպրոցները, գալիս են այստեղ լրացնելու երկդասեան դպրոցի լրիւ դասընթացը։

Աշակերտութեան ընդհանուր թիւն է մօտ 150, որից 80% չքաւոր ծնողաց զաւակներ, որբեր են և կարօտ նպաստի։

Ի նկատի ունենալով այս հանգամանքը, դպրոցիս ուսուցչական և հոգաբարձական խառն ժողովը 1914 թուի դեկտեմբերի 8-ին որոշեց ի յիշատակ վաղաթառամ տ. Աննա Տէր-Մինասեանի, որ դպրոցիս ձեռագործի վարժուհին էր, կազմել մի «Աղքատախնամ Յանձնաժողով», նպատակ ունենալով դպրոցիս ծայրայեղ չքաւոր աշակերտ-աշակերտուհիներին հայթհայթել դասական պիտոյք և հագուստ։

Ընկերութեան (յանձնաժողովի) միջոցները կազմելու են մասնաւոր նուէրները և ներկայացումներից ու երեկոյթներից գոյացած զուտ արդիւնքը։

Նուիրաբերութեան առաջին գեղեցիկ օրինակը տուաւ հենց այդ գործը կազմակերպող ուսուցչական խումբը, որ պարապելով հանգուցեալ տիկնոջ դասերը, նորա ռոճկի մի մասը՝ 66 ռուբլի 66 կոպէկ նուիրեց չքաւոր աշակերտների օգտին։

Այնուհետև ստացուեցին մասնաւոր նուէրներ, կազմակերպուեցին ներկայացում և երեկոյթ, որոնցից գոյացած արդիւնքով մատակարարուեցին կարիքաւորներին դասական պիտոյք և հագուստ, իսկ ներկայ 1916 թ. մայիսի 29-ին աղքատախնամի գանձարկղում մնացորդ գումարն էր 328 ռուբլի 69 կոպ.։ Այս ամառ՝ հանքային ջրերի շրջանում գտնուածս ժամանակ՝ մասնաւոր խօսակցութեան մէջ մի խումբ մարդիկ ծանօթանալով վերոյիշեալ ընկերութեան նպատակներին՝ սիրայօժար կերպով նուիրեցին հետևեալ գումարները.

1. տ. Շուշանիկ Տէր-Մարգարեան, պ. Նիկ. Ժամհարեան, Մկրտ. Բալանթարեան, Պետ. Ծատուրեան, Շամիր Ծատուրեան 100 ական ռուբլի ամեն տարի և Գ. Եղիազարեան, Եփ. Սարգսեան 50 ական ռուբլի նոյնպէս ամեն տարի։

*Արալ-Կասպեան Նաւթային ընկերութիւնը միանուագ 220 ռ., տ. Աննա Աւագեան 100 ռ., տ. Շուշ. Յակովբջանեան 25 ռ., պ. պ. Մանուչ. Աւագեան 100 ռ., Մելքիս. Տէր-Յակովբեան 100 ռ., Իվան Պետրոսեան 50 ռ., Գար. Տէր-Մարգարեան 50 ռ., Անդրանիկ 20 ռ., Պետ. Մեժլումեան 20 ռ., Աւետ. Տէր-Գալըստեան 25 ռ., գումարն է 1310 ռ., որ մայիսի 29 մնացորդ՝ 328 ռ. 49 կոպէկի հետ անում է 1638 ռ. 69 կ.։*

*Աղքատախնամի վարչութեան (որ կազմուած է դպրոցիս ուսուցիչներից և հոգաբարձուներից) և շրջակայ գիւղօրայքի ներկայացուցիչների որոշման համաձայն այս տարի 32 տղայ և 12 աղջիկ իբրև չքաւորներ և որբեր ստանում են հագուստ և դասական բոլոր պիտոյքները։*

*Բացի այս նպատակից վարչութիւնը հետամուտ է դպրոցին կից բանալ մի ընդարձակ հանրակացարան հեռաւոր գիւղերից եկող աշակերտութեան համար, որոնք ապրելով դպրոցին կից, իբրև կիսագիշերօթիկներ կունենան աւելի մեծ յարմարութիւններ և ուսուցիչների հսկողութեան տակ անկասկած ցանկալի յառաջադիմութիւն։*

*Աչքի առաջ ունենալով այն աննպաստ պայմանները—գիւղերի հեռաւորութիւն, ձմեռուան սառնամանիք, յորդ անձրևներ, ցեխ եւն, եւն, որոնց արհամարհելով մեր ուսումնածարաւ մանուկները օրական 4—10 վերստ ճանապարհ են կտրում, սիրում ենք հաւատալ, որ մեր հայրենակիցները արձագանգ կտան Աղքատախնամի Վարչութեան կոչին և կըշտապեն ուղարկել իրանց լուման նրա միջոցներն աւելի ընդլայնելու։*

*Յայտարարելով վերոգրեալը, քաղցր պարտականութիւն եմ համարում բարեբարոյ աշակերտութեան կողմից խորին շնորհակալութիւն յայտնել բոլոր նուիրատուներին, առանձնապէս պ. Նիկոլայ Ժամհարեանին, որ ինքն առաջինն ստորագրելով իւրաքանչիւր տարի մի հարիւրական ռուբլի, խրախուսեց ինձ և յորդորեց ուրիշներին էս օգնելու այդ բարի գործին։ Շնորհակալութիւն նաև տպարանատէր պ. Գէորգ Սուքիասեանին, որ ձրիաբար տպագրեց անդորրագրի մի մատեան 120 թերթից բաղկացած։*

*Աւագ-ուսուցիչ Շրվինանցի դպրոցի Գ. Տէր Մինասեան*

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Փոթուց պ. Խաչատուր Ղազանջեանի միջոցով Սերոպ Սերոպեանի և Սերոպ Զորոտեանի անուանակոչութեան օրը ժողոված 131 ռ. յօգուտ տաճկահայ որբերի։*

*—Գ. Բ. Մելքումեանից իւր հանգուցեալ եղբօր՝ Սարգիս Մելքումեանի յօգուտ Ընկերութեանս կտակած 5000 ռ. և տոկոսիք 43 ռ. 80 կ., ընդամենը 5083 ռ. 80 կ.։ Այդ գումարը պէտք է մնայ որպէս անձեռնմխելի գումար, իսկ տոկոսիքը պէտք է գործածուի դպրոցի համար։*

*—Գրողնայի ճիւղի վարչութիւնը փոխադրել է Կովկասեան բանկի միջոցով յօգուտ «մի հայ—մի ոսկի» հիմնադրամի (ֆոնդի) 2500 ռ.։*

*—Արհեստաւորների ակումբի (կլուբի) անդամների ընդհանուր ժողովը որոշել է պահել իւր հաշուով երեք մահճակալ Ընկերութեանս հիւանդանոցում՝ իւրաքանչիւր մահճակալի համար ամսական վճարելով 50 ռ., ընդամենը ամիսը 150 ռ.։*

*—Վելիսցիխէի ճիւղի վարչութեան նախագահ արժ. Սիմէոն ք. Տէր-Ղազարեանից, յօգուտ «մի հայ—մի ոսկի» հիմնադրամի 72 ռ., նուիրատուներն են՝ Շաքրօ Մամիաշվիլի (վրացի), Գէորգ Քալանթարեան, Սարգիս Բիծանեան և Մկրտիչ Տէր-Պօղոսեան 18-ական ռ.։*

* * *

*Ղամարլուի և Բէգջղազլուի (Երևանի նահ.) գիւղերից 24 բանդէտ (ինտելլիգէնտ) անձինք դիմելով Խորհրդիս խնդրում են թոյլ տալ բանալ Կ. Հ. Բար. Ընկերութեան նոր ճիւղ։*

* * *

*Նիժ գիւղի ծխատէր Արտաշէս քահ. Տէր-Յովսէփեանը և նոյն գիւղի դպրոցի ուս. պ. Գարեգին Անանեանը և նոյն գիւղի մի խումբ անձինք դիմել են Խորհրդիս խնդրելով բանալ նոր ճիւղ Նիժ գիւղում։ Խորհուրդը յարգելով նոցա խնդիրը, միջնորդել է նահանգական ատենին այդ ճիւղը բանալու համար։*

* * *

*Թիֆլիսի Հայ Կանանց Կոմիտէն շնորհակալութեամբ ստացաւ իւր ապաստարանի օգտին—ժորժ Մուրից—300 ռ., Ս. Վ. Արղութեանից ցերեկուայ ապաստարանը փակումից յետոյ մնացորդ 350 ռ. ու դպրոցի աշակերտական տուփից—50 ռ., այլև զանազան տնտեսութեան իրեր։*

### ՃԻՒՂԵՐ

*Կ. Հ. Բ. Ը-թեան Վերին-Ագուլիսի Վարչութիւնը յայտնում է, որ շնորհակալութեամբ ստացել է հետևեալ նուէրները.—*

*Մեծ. պ. պ. Բ. Յակոբեանցի միջոցով՝ հանգուցեալ տ. Ան. Յովհաննիսեան Ներսիսեանցի, կենդանութեան ժամանակ յատկացրած, նուէրը՝ 100 ռ., Ա. Առաքելեան Ներսիսեանից հանգ. տիկ. Ան. Յովհ. Ներսիսեանցի յիշատակին՝ 25 ռ., հանգ. բժիշկ Վահան Նիազեան Գէորգեանցի յիշատակին՝ 25 ռ. բաշխելու Ագուլիսի չքաւորներին։ Գեր. Խոջամիրեանի միջոցով, յօգուտ ճիւղիս գրադարան-ընթերցարանի, պ. Միրզաբէկ Կազիեից՝ 25 ռ., ընդամենը 175 ռ.։*

---

### ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

*Հայկ. Կենտ. Կոմիտէի գաղթ. յանձնաժողովի կողմից 1916 թուի մայիսի 8-ից մինչև 1916 հոկտ. 22-ը Թիֆլիսում գտնուող 1518 կոյր, հիւանդ և անկեալ գաղթականներին տրուել է առժամանակեայ նպաստ 3427 ռ. 37 կ.։ 1585 գաղթականների հացի և ճանապարհի ծախս 3618 ռ. 91 կ., գումարը 7046 ռ. 28 կ.։*

* * *

*Հայկ. Կենտ. Կոմիտէին կից՝ Նպաստաբաշխ մասնաժողովի միջոցաւ 1916 նոյեմբեր 6—12-ը, 48 հիւանդ, կոյր գաղթականների վճարուած է առժամանակեայ նպաստ 89 ռ. 15 կ., 9 գաղթականների՝ 39 ռ. 5 կ. ճանապարհի ծախս։ Գումար 128 ռ. 20 կ.։*

* * *

*Հ. Կ. Կոմիտէի «Մի բաժակ թէյ» հոկտ. 1-ից մինչև նոյեմ. 1-ը 1916 թուի մուտք եղած է ընդամենը՝ 8678 ռ. 94 կ.։ Ելքը եղած է ընդամենը՝ 5547 ռ. 84 կ., զուտ արդիւնք՝ 3131 ռ. 8 կ.։*

---

### ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Նոյեմբերի 11 ին ուղարկուած է*

*Ալիւր՝ Անենինօ, Երևան, Ղարաքիլիսա, Ալէքսանդրապոլ և Ղարաչինար մի-մի վագոն։*

Ծաֆառաւագ՝ Գանձակ 95 պ. 20 ֆ., Անեննօ 63 պ. 25 ֆ., Ղարաչինար 63 պ. 30 ֆ. և Աղստաֆա 24 պ. 23 ֆ.։

—

*Վան—Օհանջանեանից*

Շրջանի ամբողջ բնակչութիւնը անցաւ Թիմար։ Բաղաքը գաղթեցրած է, գաղթականներին թողել են Ջանիկում մինչև դրութիւնը պարզուի։ Պահեստը փրկելու յոյս չկայ, ուղարկեցէք ձիերի բեռնատարքը (տրանսպորտ), նաև տաք շորեր և թխած հաց։

—

*Վան—Օհանջանեանից*

Գեաւաշ, Հայոց Ձոր մինչև Վան գաղթեցրած է. բնակչութիւնը կանոնաւոր կերպով անցաւ Թիմար։ Հրաւիրեցի մարդիկ, որպէսզի տեսնեն եղած ապրանքները, ժողովուրդըն ամեն բանի կարիք ունի, օգնում ենք բստ հնարաւորութեան. շուտափոյթ ուղարկեցէք բեռնատարքը (տրանսպորտը), նաև տաք շորեր և թխած հաց։ Յոյս կայ, որ դրութիւնը լաւանայ։

—

*Եկատերինոդար—Մելքոնեանից*

Գնեցի 20 վագոն եգիպտացորեն պուդը մէկ ռուբլով։

—

*Իգդիր—Ազարիկ Ազարեանից*

Վանից գալիս են 15,000 գաղթական. Թոյլ տուէք Քաղաքների Միութեան բաց թողնեմ 50 պուդ շաքար գաղթականներին բաժնելու։ Այս հեռագրին պատասխանուած է, որ թոյլ է տրւում տալ Քաղաքների Միութեան 50 պ. շաքար։

—

*Վան—Օհանջանեանից*

Շնորհիւ զօրքի քաջարի պաշտպանութեան քրդերը յետ են շպրտուած. քաղաքն ազատուած է. պարենաւորման պահեստը անվնաս է մնացել, միայն ալիւրի, շաքարի և թէյի մի մասը յափշտակուած է. քրդերը այրել են Հայոց Ձորի գիւղերը. ժողովուրդը բնակեցուած է Թիմարում և Վանում. մեծ կարիք է զգացւում տաք շորերի. քայքայուած վայրերի գաղթականները քնում են բաց երկնքի տակ, այս ցուրտ ձմրանը։

# Քրոնիկոն

## «ՄԻ ԲԱԺԱԿ ԹԷՅ»

Հայկական «Մի բաժակ թէյ»-ը, որ հաստատուել է սրանից երկու տարի առաջ և որից գոյացած արդիւնքը յատկացւում է պատերազմից վնասուածներին, սոյն նոյեմբերի 15-ին բոլորեց իր երկրորդ տարին։ Տարեդարձի առթիւ նոյն երեկոյ վարչութիւնը ի պատիւ յաճախորդների և կամաւոր ծառայող տիկինների կազմել էր «Բացառիկ երեկոյ»

Արքունական թատրոնի երգիչ պ. Ղուկասեանը շնորհալի կերպով երգեց «Tosca-ից մի երկու յաջող հատուածներ, յետոյ եղան արտասանութիւններ ռուս արուեստագէտների և տիկ. Մայսուրեանի կողմից։ «Բաժակ թէյ»-ի Տիրուհին, տիկ. Շուշանիկ Օգանէսեանը, որի վրայ է ծանրացել ամբողջ հաստատութեան ծանրութիւնն ու ղեկավարութիւնը, ստացաւ շնորհաւորանքներ, բուռն ծափահարութիւններ և ծաղկեփնջեր։ Նուաղ գովասանքի արժանի չեն նաև մի քանի տիկիններ և օրիորդներ, որոնք կամովին ծառայում են և ունեն իրանց շնորհաւորանքի բաժինը։

***

Նորին Կայս. Բարձր. Մեծ Իշխան Փոխարքան արդէն ժամանել է Թիֆլիս. իսկ առաջուց յայտարարել էր.

«Սոյն Նոյեմբերի 11-ին ժամնելով Կովկասի սահմանները, ես ստանձնեցի փոխարքայական պարտականութիւնները»։

***

«Кавк. Сл.» հաղորդում է, որ Թիֆլիսի և Անդրկովկասի առևտրական աշխարհը ցանկանում է, որ Պետ. Խորհրդում իր ներկայացուցիչը լինի Քրիստափոր Վերմիշեանը։

***

Նոյեմբ. 16-ին կաթոլիկների Պօղոս-Պետրոս եկեղեցում կատարուեց հանդիսաւոր հոգեհանգիստ նորերս վախճանուած Լեհ յայտնի գրող Հենրիկոս Սենկեւիչի յիշատակին։ Սգահանդէսին ներկայ էին շատ պաշտօնական անձեր, տեղական ազգութիւնների և կազմակերպութիւնների ներկայացուցիչներ և բազմաթիւ համակրողներ։

***

Նոյեմբ. 15-ին՝ փախստականներին օգնող հայ կազմակերպութիւնների Միութեան նիստում որոշուած է միջոցներ ձեռք առնել Թիֆլիսում գտնուող միջոցներից զուրկ և աշխատանքի անընդունակ հայ փախստականներին տեղաւորուելու կառավարութեան մատնանշած գիւղերում, որպէսզի նրանց պետական նպաստ տրուի։

***

Շարաֆխանէում հոկտ. 13-ին կախաղան են բարձրացրել 4 հոգի Ամերիկահայ կամաւորներից, որոնք գտնւում էին Իշխանի բանակում և մեղադրւում էին իբրև քրդերի սպանութեան գործում մասնակիցներ։

***

Նոյեմբ. 14-ին Բելգիացի բանաստեղծ Էմիլ Վերհարըն, որ Ռուան էր գնացել դասախօսելու համար, վերադարձին անզգուշութեամբ ընկնում է գնացքի տակ և սոսկալի կերպով յօշոտւում։

***

Հայ Գրողների Ընկ. Վարչութիւնը Սենկեւիչի մահուան առթիւ հետևեալ հեռագիրն է ուղարկել Վեվէ, Լեհական գլխաւոր յանձնաժողովին. «Հայ Գրողների Ընկերութիւնը յայտնում է իր խորին ցաւակցութիւնը Լեհ գրական գերդաստանին և ժողովրդին իրենց մեծ զաւակի՝ Հենրիկոս Սենկեւիչի մահուան առթիւ, որի տաղանդաւոր երկերը վաղուց ջերմագին սիրուած են հայ ժողովրդից»։

***

Մոսկուայից հեռագրում են, որ բանաստեղծ Ա. Ծատուրեան ծանր հիւանդացել է սրտի պնդախտով (склерозъ)։ Սկզբում նրա հիւանդութիւնը վտանգաւոր է եղել, բայց շուտափոյթ օգնութեան շնորհիւ հիւանդն ուշքի է եկել։

***

Նոյեմբ. 12-ին Հայոց Ազգ. Ընկ. դահլիճում պ. Յ. Ճերմակ դասախօսեց Ռումինիոյ և Բուլղարիոյ հայութեան մասին։

***

Նոյեմբ. 13-ին «Մեղու» Ընկերութեան նախաձեռնութեամբ կայացաւ Սաթենիկ Օհանջանեանի անուան մանկական գրադարան-ընթերցարանի բացումը։ Վարչութեան զեկուցումից երևաց, որ գրադարան-ընթերցարանի օգտին ստացուել են նուէրներ գա-

նազան անձերից և հաստատութիւններից 1416 ռ., որի մի մասով գնուել են 627 գիրք. գրադարան-ընթերցարանում կան 1234 գիրք և ուրիշ հրատարակութիւններ։
Եղան երգեր և բանախօսութիւններ։

# Գեղարուեստ

## ԱԶԱՏՈՒԹԻՒՆ

### Կ. ԲԱԼՄՈՆՏԻ

Նուիրուած՝ Վ. ԲՐԻՒՍՈՎԻՆ

Неужели же я буду такъ зависѣть отъ людей?

*Մի՞թէ միշտ պիտի մարդկանցից կախած լինի իմ հոգին*
*Եւ ես անձնատուր չլինե՞մ մտքիս բոցէ հրաշքին։*

*Մի՞թէ ես անվերջ իմ ճամբի կիսին տատանուե՞մ պիտի,*
*Երբ սիրտս ինձ միշտ մղում է, մղում գիրկը անյայտի։*

*Ոչ. ոչ, չեմ խաբի, իմ փայլուն աստղին չեմ խաբի բնաւ,*
*Նրան կգիմեմ, որ կանչում է ինձ, որ ինձ լոյս ծնաւ։*

*Երկնքի կամքն է այդ.—ու ես չեմ լսի երբէք, ոչ ոքի—*
*Ամեն տեղ միայն լոկ քո մղումին—իմ վսեմ ոգի։*

*Ծով հանդիպի ինձ՝ ցած կ՚սլանամ խորքը ջրերի,*
*Թափանցիկ ալիքն ինձ օդ, թարմութիւն և լոյս կբերի։*

*Թէ բարձրագագաթ լեռները կուրծք տան իմ ճամբի կիսին՝*
*Թող ինձ օրօրեն ձիւները ճերմակ, արծաթէ լուսին։*

*Թէ անդունդ բացուի՝ աստղիս կ՚ուղարկեմ հրաժեշտ վերջին,*
*Առանց ափսոսանք կ՚ընկնեմ կջարդուեմ քարերի միջին։*

*Բայց միշտ ամեն տեղ պիտի հաւատամ, ձգտեմ հրաշքի,*
*Ազատ, գեղեցիկ պիտի ես լինեմ—մի հէքեաթ ոսկի։*

*Եթէ որ մէկն էլ ընթացքը բաղդիս փոխել ցանկանայ՝*
*Նեղիկ դագաղում, կամ դրախտի մէջ՝ իմ կողքին է նա։*

*Ես՝ ազատութիւն միշտ ինձ կփնտռեմ, կտամ ուրիշին,*
*Թէ չէ երկուսիս՝ անչափ, անչափ նե՞ղ կլինի միասին։*

*Ուրեմն իմացէք, լսէք լարերիս հնչիւնը քաղցրիկ,*
*Նոյնպէս և գիտցէք,—թափանցիկ ցօղից կ՚եղնէ փոթորիկ։*

*Մերթ շուշաններին արեն է փարւում, կպչում շուրջ պարի,*
*Բայց թէ ցանկանայ, կարմիր՝ դաշտերում հրդեհ կ՚վառի։*

*Եւ ես՝ ուրիշին ջերմութիւն կտամ, թէ՞ մահ իմ գրկին,*
*Բայց միշտ հաստատուն՝ պիտի պահպանեմ իմ ազատ հոգին։*

Գ. Բեալաչեան

## ՅՈՅՍ

*Դեռ կը պլպլայ կանթեղը յոյսիս*
*Սեւ հողմերու դէմ.*
*Ու ես, ծնկաչոք լուռ ու դալկադէմ՝*
*Կ՚սպասեմ լոյսիս...*

*Գիտեմ պիտ դառնայ, թախծոտ ու տխուր,*
*Ճամբայից մոլոր...*
*Ու վառես պիտի ջահերը բոլոր*
*Սեւ կեանքիս խարխուլ...*

*Գիտեմ. մնարիս մօտը պիտի գայ*
*Քայլերով դողդոջ...*
*Ու սիրտս բանայ նոր սիրոյ բողբոջ*
*Կեանքիս արեւ տայ։*

*Գարուն պիտ բերես սեւ սրտիս.—գիտեմ.*
*Իմ հոգուս մարած.*
*Եւ մռայլ, և՛ ջինջ բիբերէդ առկայծ,*
*Նոր կրակ պիտ ըմպեմ...*

*
* *

*Դեռ կը պլպլայ կանթեղս յոյսի*
*Անզօր է խաւար.*
*Կրկին կը վառին հաւատքով անմար,*
*Երազներս ոսկի...*

S. Phinx

# Գիտութիւն

## ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄ*)

### ԻԲՐԵՒ ՄԻ ԳՈՐԾՕՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Ժամանակի հոսանքն ի վայր ընթանալով հասնում ենք մի նոր ժամանակի։ ԺԶ. դարի եկեղեցական մեծ ապստամբութեան հետ Գերմանիայում, Ֆրանսիայում և Բրիտանիայում սկսում է կրօնական պատերազմների դարաշրջանը։ Թէև այդ պատերազմները շաղկապւում էին Ֆրանսիայի, Սպանիայի, Աւստրիայի և Գերմանական փոքր տէրութիւնների վեհապետների արքայատոհմական փառասիրութիւնների հետ, բայց նրանցում առհասարակ տիրապետում էր կրօնական վէճը. և կրօնական հակամարտութիւնը այնչափ ուժեղ էր որ քիչ տեղ էր թողնում ցեղային գիտակցութեան աճման։ Գրեթէ ամեն ցեղ բաժանուած էր ինքնիրանում, և եթէ բողոքական տարրը աւելի ուժեղ էր Տեւտոնեան քան թէ Կելտական և այսպէս ասուած Լատին երկիրներում, Տեւտոնեան Աւստրիան, Բէօյն և Միւնխէն էլ կաթոլիկ քաղաքներ էին. իսկ ֆրանսախօս Ժընև, Վօ և հարաւային Ֆրանսիայի մի քանի մասեր, ինչպէս նաև Պիէմօնտէի հովիտները, հուգենականներ էին։

Այն ամեն երկիրներում, ուր գոյութեան ունէին, և առանձնապէս Գերմանիայում, այս բաժանումները յամեցրին ազգային գիտակցութեան զարգացումը. իսկ այն երկիրները որ կամ ամբողջապէս կաթոլիկ էին և կամ բողոքական, իրենց զգում էին

*) Տես «Համբաւաբեր» № 46։

կողմից նոմինալականների (մեծ մասամբ գերմանացի), իսկ միւսից էլ Ջեյմս ուսուցիչների և ուսանողների մեծամասնութիւնը բովանդակող Ռէալական կուսակցութեան միջև տարուող սքոլաստիկ վիճաբանութիւններում։

Նախապէս տարբեր բայց միևնոյն վեհապետութեան տակ ապրող ցեղերի միջև ծագող այդ երևոյթներին ուրիշ լուսաբանութիւններ գտնելու համար կարիք չկայ հեռու գնալու մեր սեփական կղզիներից (Բրիտանիա), ուր Սկովտիայի և Իրլանդիայի Գաէլները և Վալլէսի երկրի Կիմրիներ կանգնեցան ընդդէմ Սասենախին, որ անցնելով ծովից եկել տեղաւորուել էր կելտական երկրներում։—Տարբեր լեզուներ խօսող և յստակօրէն աննման նկարագիր ունեցող ժողովուրդների միջև միշտ կայ որոշ չափով վանողութիւն։ Այդպիսի վանողութեան հետքեր կային և դեռ կարող են գոյութիւն ունենալ Ուէլս երկրում, ուր ես յիշում եմ սրանից ճիշտ 50 տարի առաջ երբ ես նկատում էի սահմանագլխի Անգլիացիների մէջ փոքր չափով արհամարհանք Ուէլսցիների կարծեցեալ դիւրագրգիռ փոփոխամտութեան վերաբերմամբ, իսկ վերջիններս էլ գաղտնապէս զայրանում էին Անգլիացիների գոռոզ և կոպիտ ընթացքի վրայ։

Սկովտիայում գոյութիւն ունէր մի հակամարտութիւն հիւսիսային լեռնաբնակ գելտերի և անգլիախօս դաշտաբնակների միջև. վերջիններիս անունները կարող էին յափշտակուել լեռնականների կողմից։ ԺԸ. դարի կիսում անգամ Կլայդէսդալ և Գալովիցի բնակիչները դեռ չէին մոռացել «լեռնագաւառացի բանակի» գործած աւերմունքները, որ Չարլս Բ. արձակել էր երիցական եկեղեցիի ուխտաւորների դէմ (Covenanters)։ Վալտըր Սկոտը և Ռոբըրթ Բըրնս, երկու բանաստեղծներ էին, որ ստեղծեցին սկովտիական ազգութիւնը, և երկու արմատներից սերած սկովտիացիներին էլ հպարտութիւն ներշնչեցին իրար հանդէպ. նոյնպէս Սկոտն էր որ իր Rot Roy, Waverly և «Լճի Թագուհին» երկերով մեզ տուել է ամենակենդանի պատկերը դեռ չը ձուլուած երկու ժողովուրդների։ Այսուամենայնիւ Սկոտն ինք չէր որ իր «Լճի Թագուհու» տողերով ԺԶ. դարի մարդկանց մտքին մէջ ներմուծում էր բուն իր պատմական երևակայութեան ծնունդ եղող գաղափարներն ու զգացմունքները։ Նա Ռոդրիկ Դըուին ասել է տալիս...

«Դաշտերի և գետերի ժառանգորդ՝ գայէլը
Ուժեղ բազուկով պիտի ազատէ իր բաժինը».—

Լեռնական գերդաստանը ասում էր Դաշտեցիներին։

Բայց Կելտ և Սաքսոն ցեղերու երկրային վէճերու խորհուրդը լցրել է վայրենի Մակ-Գրիգորներու սրտերը, որոնք կատաղութեամբ կռուեցան Կելտ Մակդոնալդներու և Մակֆարլէններու դէմ հիւսիսում և հարաւում, ինչպէս և Լենոքսի և Մենտիթի «Սաքսոն» ազնուականների դէմ։

Այս վաղեմի փոխադարձ վանողութեան մի անկորնչելի հետք երևում է այն հակակրութեան մէջ, որ Թոմաս Կարլայլից մի տխպար դաշտեցի գիւղացի արտայայտում էր բանաստեղծ Թոմաս Կեմբպելի կնոջ հանդէպ, որ ունէր լեռնցու շեշտ և բարքեր։ Այդ քննադատական ոգին կարող էր կակղացնել Սամուէլ Ջոնսընին, որի սկովտիացիների դէմ ուղղած գանգատներից մէկը այն էր, որ սրանք շատ յաճախակի գովաբանում Կին մէկը միւսի արժանիքները.—«ոչ, պարոն իրլանդացիները մի ուղղամիտ ժողովուրդ են. նրանք երբէք իրարու մասին լաւ չեն խօսիր»։

Առհասարակ ենթադրուում է, որ Կելտերի և Տևտոնների միջև մարտնչումը աւելի սուր եղել է Իրլանդիայի մէջ, քան այլուր։ Բայց և այնպէս նկատելի էր երկար ժամանակից ի վեր, ճշմարտապէս թէ այդ կղզու լաւագոյն հողերը գրաւող Անգլօնորման բախտախնդիրներ շուտով դարձան աւելի իրլանդացի, քան բուն իրլանդացիներ (ipsio Hibernis Hiberniores), Թիպպէրարու մէջ հաստատուած Կրոմուէլի զինուորների շառաւիղները ի վերջոյ եղան «սպիտակ տղամարդիկ» և «էրիկ մարդիկ», որոնք ԺԹ. դարի առաջին կէսին մեծ կառավարութեանց պատճառ դարձան։ Բնիկ ստուար ազգաբնակութեան մէջ նրանք կազմում էին փոքր տոկոս և միմիայն Ըլստերի հիւսիս-արևելեան անկիւնում, ուր զետեղուել էին բաւական մեծ թուով սկովտիացիներ, ուր տարրը մնաց ինքնուրոյն. այդ աւելի արդիւնք էր կրօնին քան թէ տեղին։ 60 տարի առաջ դաշտագաւառների հարուստ հողերի վրայ ապրող երիցական հողագործները դեռ խօսում էին սկովտիական բեկբեկ բարբառը և դէպի Անդրիմի կոմսութեան հիմունքները և Դաունի կոմսութեան Մօրն լեռները քշուած հռոմէացի կաթոլիկներին ակնարկում էին իբրև «Tae Gerish» (փոխանակ ասելու «The Drish», որ նշանակում է իրլանդացիներ)։

Խօսելով ընդհանրապէս իրլանդական կղզու վերաբերմամբ, թւում է որ իրլանդական առանձին ազգութեան զգացումն սկըսուում է Եղիսաբեթի օրով, նախ հողի և ապա կրօնի պատճառով սկսուած պայքարից։ Նոյնիսկ 1798-ի ապստամբութեան և միացեալ իրլանդացիների օրերում ազգային զգացումը յայտնապէս ցեղային բնոյթ չունէր։ Իրլանդական Ազգային կուսակցութեան պարագլուխները անգլիական կամ սկովտիական ծագում ունէին, ինչպէս Վոլֆ, Տոն և Թոմաս Րըսըլ (երկուսն էլ բողոքական) ինչպէս նաև իրենց երիցական դաշնակիցները Բիլֆաստում՝ օրինակ՝ Օրը և Մակկրակըն։ Թւում է որ Կելտական աւանդութիւններով տոգորուած, կամ իրլանդական լեզուն և իրլանդացի հերոսների սխրագործութիւնները իբրև ժողովրդական գրգռման նիւթ գործածող առաջին իրլանդացիները եղել են բանաստեղծ Թոմաս ու գրականութեան մէջ և Դանիէլ Օ Կոննէլը քաղաքականութեան մէջ, որի գործունէութեան վախճանը մեզնից ոմանք դեռ յիշում կը լինեն։ Նրանք որ խօսում են «Իրլանդիայում գոյութիւն ունեցող երկու ազգերի մասին» առհասարակ ուզում են ասել, որ մէկը բաղկանում է Գայէլեան բնիկներից, միւսը անգլիացի և սկովտիացի ներգաղթողներից։ Իսկ եթէ այդ արտայայտութեան մէջ գտնուած է ճշմարտութիւն—մի հարց որ հեռու է իմ նիւթի շրջանակից—այդ այն է, որ այդ ազգերից ոչ մէկը ամբողջապէս կազմուած է Կելտական արիւնից, ոչ միւսն էլ ամբողջապէս Տևտոնեան արիւնից։

Ա. Սաֆրաստեան

(Շարունակութիւնը հետևեալով)

---

# ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ

## ՔԱՌԱՆՈՒԱԳԻ ԺՈՂՈՎ

Թիֆլիսի երաժշտական շրջանն սկսուեց։ Ամենից առաջ հրապարակ եկաւ Վիլկոմիրսկիների եռանուագը (трio)։ Յետոյ տեղի ունեցաւ Պիշնով և Շվէյգերի երաժշտական ուսումնարանի սիմֆոնական նուագահանդէսը, մասնակցութեամբ Պիշնով (դաշնակահար), Ֆիշբերգ (ջութակահար) և Սամինսկի (երաժշտագրող և նուագապետ (дирижеръ)) երաժիշտների, որոնց լաւ ճանաչում է հասարակութիւնը։

Աւելի ուշադրութիւն գրաւեց երեքշաբթի, նոյեմբերի 1-ին Կայսերական Ռուսաց Երաժշտական Ընկերութեան առաջին շարի (серія) քառանուագ ժողովը (квартетное собраніе)։

Այս երեկոյթին մասնակցեցին մեր հասարակութեանը անծանօթ երկու երաժիշտ՝ Գուզիկով (ջութակահար) և Նէօյ Հաուս (դաշնակահար)։ Նուագահանդէսի առաջին մասում նուագուեց Բեթհովենի քառանուագը (F-dur) բէ-մեծ ձայնատեսակով գրուած opuc 18 № 1. իբրև առաջին ջութակահար նուագում էր Գուզիկովը, բայց որովհետև բաւական դժուար է որոշ գաղափար կազմել գեղարուեստագէտի մասին, որ առաջին անգամ է ներկայանում մի անծանօթ հասարակութեանը, մանաւանդ համանուագի ժամանակ, այն էլ այսպիսի հեշտ քառանուագի, ինչպէս ներկայ

Բէթհովէնի նուագայարդարութիւնն (композиція) է, ուստի լաւագոյն է քննադատութիւնը թողնել մինչև հետևեալ անգամը, երբ ջութակահարը իբրև մենանուագող հանդէս կը գայ: Ներկայ երեկոյթի մենանուագողն էր Նէօյ Հաուզը, որը իր բարձրագոյն երաժշտական կրթութիւնը ստացել է Բերլինի երաժշտական ճեմարանում և Վիէննայի ուսուցչապետ Գոդովսկու «վարպետների դասարան» (Meisterklasse) Կոնսերվատորիայի բաժանմունքում, արժանանալով այստեղ արքայական մրցանակին: Ապա բարձրագոյն ուսումը վերջացնելով նուագահանդէսներ է տուել Եւրոպական զանազան կենտրոններում:

Դաշնակահարը նուագեց Շումանի է—փոքր (d-moll) ձայնատեսակով գրուած եռանուագի դաշնամուրի մասը: Նրա նուագընկերներն էին Վիլշաուն՝ ջութակահար և Մինիարը՝ թաւ ջութակահար: Եռանուագը անյաջող անցաւ համաձայնութեան տեսակէտից, վասնզի պարզ նկատւում էր նուագողների տարբեր երաժշտական ըմբռնողութիւնը: Բայց և այնպէս դաշնակահարը կարողացաւ ներկայացնել ճշգրտաբար Շումանի ոճը, մանաւանդ ոտնակների (педаль) միջոցով երանգների բոլոր նրբութիւնը:

Վերջում նուագեց Շոպէնի սոնատը պա-սրիկ-փոքր (h-moll) ձայնատեսակով գրուած—Շոպէնի ամենալուրջ նուագայարդարութիւնը, եթէ ի նկատի ունենանք սոնատայի արտաքին ձևն և թէ խոր զգացումով լի բովանդակութիւնը:

Երիտասարդ երաժիշտը ընտրելով ներկայ սոնատան ցուցադրեց իր լրջութիւնը և վերին աստիճանի զարգացած գեղարուեստական ճաշակը. ի նկատի ունենալով սոնատայի առանձին մասերի կատարումը, պէտք է ասել, որ շատ յաջող անցաւ երրորդը (Jargo):

Այստեղ երաժիշտը ցոյց տուեց թէ ինչպիսի նուրբ զգացում ունի և ըմբռնում է Շոպէնի ոճը. երկրորդ մասը պէտք է համարել անյաջող, վասնզի վստահութիւնը պակաս էր, իսկ վերջին մասում չէր զգացւում այն խոր ողբերգական ամբողջ ազգի տրտունջը, որը կայ Շոպէնի երկերում: Ընդհանրապէս դաշնակահարը երևան եկաւ իբրև քաջամտա արուեստագէտ (виртуозъ), մանաւանդ զարմացնելով իւր վստահ գողտրիկ և փայլուն ձայնաստանդուղներով (гаммы) և գեղեցիկ եթերական հնչիւնի երանգով: Նէօյ Հաուզն ունեցաւ մեծ յաջողութիւն և ծրագիրը վերջացնելով՝ նուագեց մի քանի երկ ևս: Նուագասրահը լի էր հասարակութեամբ:

Թիֆլիս — Ովսաննա Տէր-Գրիգորեանց

---

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

### «ՀԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ»

### ՇԱՆԹԻ

### Խաղ Հայ Դրամ. Ընկ. խմբի

Նոյեմբերի 14-ին, Արտիստիկ Ընկերութեան թատրոնում Դրամ. Ընկ. խումբը խաղաց Շանթի «Հին Աստուածներ» դրաման: Թէև այս շրջանում երկրորդ անգամն է խաղացւում այս թատերկը, բայց և այնպէս թատրոնը ծայրէիծայր լիքն էր:

Խմբի խաղն անցաւ աւելի բան յաջող, թէև ներկայացման ընթացքում մէկը յաջողեց անսպասելիի սահմանները թեակոխելու:

Հայոց ներկայացումներն ընդհանրապէս աչքի են ընկնում հետևեալ առանձնայատկութեամբ. մի քանի դերասաններ խաղում են մեծ ոգևորութեամբ, տաղանդով և շնորքով, միւսները, այսպէս ասած, երկրորդական դերակատարները լինում են թոյլ, անշնորք և չեն նպաստում ներկայացման ամբողջական տպաւորութեանը. յաճախ նոյն իսկ փչացնում են գործին:

Այս երեկոյ այդպէս չէր. առանձնապէս բարձունքները ձըգտողներ չըկային, ինչպէս և ներքևում մնացողներ. աչքի ընկնող դերասանները համեստացել էին, երկրորդականները՝ ընդհակառակն սովորական մակերևոյթից բարձրացել: Ծայրերը իրար էին մօտեցել. ստեղծուել էր մի միջին դրութիւն, մեծերն և փոքրերը իրար կողք-կողքի, շատ քիչ առաջ և ետ տարածութեամբ քայլում էին յաջողութեան ճանապարհի վրայ: Երկրորդականները ձգտում էին ցոյց տալու, որ գեղարուեստական տպաւորութեան գաղտնիքը գուցէ հենց երկրորդական տպաւորութիւնների յաջող համախմբումն է: Վանականների խումբը զանազան տեսարաններում, մեհեանի տեսարանում (մի փոքր թոյլ), գլխաւոր դերակատարների հետ ունեցած հաղորդակցութեան այս կամ այն պայմանի մէջ երկրորդական դերակատարներ Սուրաբեան, Սանամեան, Միքայէլեան, Ազատեան, Բերոյեան, Կարապետեան, Զաբէլ տուին սպասածից աւելին: Սրանք խրախուսանքի արժանի են իրենց ռէժիսորի հետ միասին:

Այս երեկոյ սրանց ուսերի վրայ էր դրած ներկայացման ամբողջ ծանրութիւնը. եթէ սրանք խաղային թոյլ, անտրամադիր, անկասկած է, որ ներկայացումը կը տապալուէր, որովհետև գլխաւոր դերակատարների այս անգամուայ խաղը ջոկ վերցրած՝ հազիւ թէ բաւարարէր գեղարուեստասէր հասարակութեանը:

Գլխաւոր դերակատարներից մէկը միայն հասաւ կատարելութեան բարձունքին. դա կոյր վանականի դերը խաղացող պ. Մանուէլեանն էր: Նրան դիտելիս այն համոզումն ես կազմում, որ այդ դերը այլ կերպ խաղալ անհնար է, որ եթէ մի փոքրիկ էլ փոխուի, այդ կըլինի ի վնաս գործի, եթէ նոյն իսկ այդ փոփոխութեան հիմքում դրուած է եղել խաղն աւելի լաւացնելու գիտակցութիւնը:

Ամեն մի կոչման մարդ իր գոյութեան հիմքը պէտք է ունենայ, ինչպէս ամեն մի դերասան իր դերասանական գոյութիւնը հիմնաւորող մի խաղ. պ. Մանուէլեանը կոյր վանականի խաղով իր լուրջ դերասան լինելու անկասկածելի ապացոյցը տուաւ:

Միւս դերակատարների խաղի ընթացքում դիտելու արժանի էր՝ դէմքի և դիրքի այն նուրբ փոփոխութիւնները, որը հանդէս էր բերում պ. Մանուէլեանը. յաճախ մոռացւում էր միւս դերասանների խաղը, խօսակցութիւնը, շրջապատը, այնքան կլանող է պ. Մանուէլեանի շրջապատից ստացող տպաւորութիւնների անձայն և դիմագծային պատասխանները:

Միւս գլխաւոր դերակատարներից և ոչ մէկն էլ չը հասաւ կատարելութեան այս բարձունքին: Տիկին Սիրանոյշը Իշխանուհու, պ. Սևումեան Վանահօր և պ. Փափազեանը Աբեղայի դերերում գոհացուցիչ լինելուց այն կողմ չանցան. պ. Փափազեանի երբեմնի անհոգ տրամադրութիւնը և ոգևորութեան պակասութիւնը, պ. Սևումեանի խաղի անգոյն շեշտերը, տիկին Սիրանոյշի լալկան շեշտերը և հոգին ամբողջովին չընդգրկող խաղը ցոյց էին տալիս, որ այս դերասանները այս երեկոյ չտուին այն, ինչ կարող էին:

Տիկ. Սևումեանը ապացոյցներ տուեց իր խաղի սկզբի մասով, որ Սեդա կարող է դառնալ. էութեան եթերականութիւնը արտայայտելու փորձերը նրան երբեմն էին յաջողւում: «Իջէք-իջէք երազներ»ի ժամանակ վերջին տներում ցածր տուն վերցնելը չէր նպաստում տպաւորութեան դրականութեանը: Վերջին տեսարաններում նրա թողած տպաւորութիւնը աստիճանաբար թուլանալ սկսեց:

Իշխանի դերակատար պ. Միրզոյեանը Մեհեանի տեսարանում շատ անբաւարար տպաւորութիւն թողեց: Ինչպէս սկզբում յիշեցինք, այժմ ևս պէտք է շեշտենք, որ չնայած գլխաւոր դերասանների ոչ կատարեալ խաղին՝ ամբողջ ներկայացումն անցաւ շատ յաջող: Ամբողջ խումբը խաղում էր ոգևորութեամբ. ամեն մէկը իրար լրացնելով դերասանները ստեղծեցին մի հաճելի գե-

դարուեստական մթնոլորտ, մի բան, որ քիչ է պատահում մեր ներկայացումների ժամանակ։

Գ. Էդ.

—

### ՀԱՅ ԴՐԱՄԱՏԻԿ ԴԵՐԱՍԱՆՆԵՐԻ «ԳՈՒՐԳԷՆ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ

Նոյեմբ. 17-ին Արտիստիկ թատրոնում Հայ Դրամատիկ «Գուրգէն» դերասանական խումբը ներկայացրեց Եա. Գորդենի «Ովկիանոսից դուրս» դրաման, որի մասին «Համբաւաբերի» յաջորդ համարում կը խօսենք։

—

Վաղը՝ երկուշաբթի, նոյեմբերի 21-ին, Հայոց Դրամատիկ Ընկերութեան խումբը իր ութերորդ հերթական ներկայացման առթիւ կը խաղայ Պօլ Գաւայի «Ճ ա կ ա տ ա գ ր ի  խ ա ղ ը» ֆրանսական նուրբ կատակերգը (կոմեդիա), որ մեծ յաջողութիւն է գտել ընդհանրապէս ամբողջ Ռուսաստանի և մասնաւորապէս Պետրոգրադի «Միխայլովսկի» թատրոնում։ Լրիւ մասնակցում է խումբը։

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

### ՏՐԱՊԻԶՈՆՑԻ ԱԶԱՏՈՒԱԾ ՀԱՅԵՐ

Հ. Կ. Կոմիտէի Տրապիզոնի լիազօր Առաքելեանը հաղորդում է, որ հոկտ. 27-ին Կարինից Տրապիզոն են փոխադրել 54 հայ կին և երեխայ, որոնք Տրապիզոնի շրջակայքի գիւղերի բնակիչներից են. այդ գաղթականներին Կարինից փոխադրել է Կոմիտէի նախկին անդամ պ. Օղարաշեանը։ Ահա ցանկը.

Ոսկեհատ Յովսէփեան 31 տ. Ճողարա գիւղից. Վարդուհի Վարդանեան 35 տ., Հեղինէ Վարդանեան 35 տ., Աննիկ Վարդանեան 25 տ., Մարիամ Թորոսեան 35 տ., Արուսեակ Ղուկասեան 14 տ., Եւա Մալխասեան 15 տ.—Սամերա գիւղից. Պրապիօն Ստամբօլեան 30 տ., Ազնիւ Գահրիմանեան 25 տ., Աննա Գահրիմանեան 20 տ., Թագուհի Խաչատրեան 35 տ., Կատարինէ Չէփնեան 35 տ.—Ալպիօն գիւղից. Ոսկեհատ Ծովակեան 30 տ., Լուսիկ Ծովակեան 23 տ., Թագուհի Թոռլաքեան 20 տ., Արշալոյս Քոչիկեան 18 տ., Ոսկեհատ Քոչիկեան 55 տ.—Ֆերենծուտ գիւղից. Զուարթ Ճզմեկեան 20 տ. Տրապիզոնից. Լուսիա Ղուկասեան 16 տ., Արշալոյս Պըխքեան 14 տ., Թագուհի Սիմաւոնեան 16 տ.—Սիֆտէր. գիւղից. Կուարէթ Սահակեան 50 տ., Յոքմն Մատիլեան 30 տ., Ոսկեհատ Ջիվելեքեան 40 տ.—Սիւրմէնէ գիւղից. Զուարթ Լուսիկեան 15 տ.—Տրոնայ գիւղից. Արմենուհի Քէօսէեան 13 տ.—Աֆիանց գիւղից. Ազնիւ Մալինասեան 30 տ. Սամերայ գիւղից. Ազնիւ Զրաքեան 20 տ., Արփենուհի Չէֆնեան 12 տ., Հնազանդ Ստամբոլեան 7 տ.—Ալպիօն գիւղից. Իւղարեր Գահրիմանեան 8 տ., Հռիփսիմէ Չէփնեան 11 տ.—Ալպիոն գիւղից. Ծովիկ Ծովակեան 3 տ.—Ֆէրէնծուտ գիւղից. Սաթենիկ Սահակեան 6 տ.—Սիրմէնէ գիւղից. Մանուշակ Սիմոնեան 4 տ., Անդրանիկ Յովսէփեան 8 տ.—Ալպոն գիւղից. Միհրան Վարդանեան 12 տ., Անդրանիկ Վարդանեան 5 տ., Վահրամ Վարդանեան 9 տ., Անդրանիկ Թորոսեան 7 տ.—Սամիրայ գիւղից. Գուրգէն Խաչատրեան 12 տ., Առամ Զրաքեան 12 տ.—Ալպիոն գիւղից. Միհրան Յովակիմեան 7., Եղիշէ Յովակիմեան 5 տ.—Քէրէնծուտ գիւղից. Հրանտ Կոստանեան 9 տ., Սեդրակ Մատիլեան 7 տ.—Սիւրմինէ գիւղից. Յակոբ Լուսիկեան 13 տ.—Տըրոնայ գիւղից. Յարութիւն Յովսէփեան 10 տ.—Ծողարայ գիւղից. Պետրոս Պըխքեան 12 տ.—Ալպիոն գիւղից. Գալուստ Եաղշըջեան 11 տ., Սիմոն Մատիլեան 13 տ.—Սիւրմէնէ գիւղից. Գարեգին Մենալեան 11 տ., Էդուարդ Սահակեան 10 տ.—Նողածանայ գիւղից. Վարդան Քոչիկեան 15 տ. Քէրէնծուտ գիւղից։

### ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Մոսկուայի Հայ Կանանց կոմիտէից տ. Սոֆիա Միրզոյեանի ձեռքով ստացայ մի արկղ 100 քսակ նուէրներ, որի համար յայտնում եմ խորին շնորհակալիքս։

Անդրանիկ

### ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

Ստացանք՝ Ա. և Բ. Թոփչեանների կազմած «Լոյս» գրպանի և պատի 1917 թուի օրացոյցները։ Գրպանինն արժէ 35 կ., պատինը 90 կ., Թիֆլիս։

—

Ստացանք «Արարատ» ամսագրի սեպտ.-հոկտ. միացեալ համարը։ Արարատը, պէտք է ասել, սկսել է հետաքրքրական դառնալ, յատկապէս իւր նոր խմբագիր Գիւտ արեղայի շնորհիւ։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

Քարվանսարայում (Ղազախի գաւառ) բնակւող Սոնա Ամիրաղեանի 16-ամեայ որդին՝ Համազասպ Մուշեղեան Առաքելեանցը 14 ամսից ի վեր է որ կորած է. տեղը իմացողէն խնդրւում է յայտնել անմիջապէս Հ. Բ. Ընկ. Քարվանսարայի ճիւղի վարչութեան։

3—3

---

Անգլիերէնի քաջ ծանօթ Ե. Սահակեան մատչելի գներով Անգլիերէն լեզուի դասեր է տալիս. ցանկացողները թող դիմեն Межевая, 28.

---

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւանական գրքեր։

Դիմել Դանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 47

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Կենտրոնական Կոմիտէի Ալէքսանդրապոլի II որբանոցի որբերի անուանացուցակը*

*1916 Թ. սեպտեմբերի 1-ին*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ծննդա-վայրը | Ծնող ունի | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|
| 17 | Սարգիս Թորոսեան | 8 | Գիւլիէգիւղան | « | ոչ | |
| 18 | Առաքել Յարութիւնեան | 5 | | « | » | |
| 19 | Լեոն Մովսէսեան | 8 | | հայր | » | |
| 20 | Մարգարիտ Մովսէսեան | 7 | | « | » | |
| 21 | Սմբատ Մովսէսեան | 12 | | « | այո | |
| 22 | Թորգոմ Յովհաննիսեան | 6 | | ոչ | ոչ | |
| 23 | Սարգիս Մկրտեան | 6 | | « | » | |
| 24 | Մարկոս Մանուկեան | 6 | | « | » | |
| 25 | Վարդան Կարապետեան | 13 | | հայր | » | |
| 26 | Արշակ Ներսէսեան | 14 | | ոչ | » | |
| 27 | Տիգրան Խաչատուրեան | 14 | | „ | այո | |
| 28 | Պօղոս Կիրակոսեան | 14 | | „ | ոչ | |
| 29 | Մարթա Կիրակոսեան | 9 | Ջրդնիկ | ոչ | ոչ | |
| 30 | Արամ Յարութիւնեան | 9 | Թաթըն | ոչ | » | |
| 31 | Ազատ Մանուկեան | 5 | Շէնիկ | » | » | |
| 32 | Ղեւոնդ Յովհաննիսեան | 9 | Շողանամերկ | » | » | |
| 33 | Ազատ Մկրտչեան | 8 | „ | » | » | |
| 34 | Հմայեակ Շարոյեան | 9 | „ | » | » | |
| 35 | Հմայեակ Յարութիւնեան | 10 | Գեղաշ | հայր | » | |
| 36 | Ստեփան Թորոսեան | 9 | „ | ոչ | » | |
| 37 | Միհրան Յովհաննիսեան | 9 | „ | » | » | |
| 38 | Անդրանիկ Սարգսեան | 11 | Մկթինա | » | » | |
| 39 | Միսակ Յարութիւնեան | 11 | » | » | » | |
| 40 | Անուշաւան Գրիգորեան | 11 | Երիցանց | » | „ | |
| 41 | Հմայեակ Յակոբեան | 8 | Գիմա | » | » | |
| 42 | Յարութիւն Վարդանեան | 8 | Աղբէկ | » | » | |
| 43 | Շմաւոն Մարտիրոսեան | 10 | » | » | » | |
| 44 | Յակոմբ Միլոյեան | 14 | » | » | „ | |
| 45 | Գէորգ Մկրոյեան | 8 | » | » | „ | |
| 46 | Գաբրիէլ Խաչատուրեան | 8 | „ | » | „ | |
| 47 | Թորգոմ Մակարեան | 5 | „ | » | „ | |
| 48 | Սարգիս Յակոմբեան | 9 | Ապդան | » | „ | |
| 49 | Տիգրան Յովսէփեան | 9 | » | » | „ | |
| 50 | Խաչիկ Կիրակոսեան | 3 | » | » | „ | |
| 51 | Մելիք Համազասպեան | 10 | Տալւորիկ | » | „ | |
| 52 | Լեոն Մանուկեան | 14 | » | » | „ | |
| 53 | Սամսոն Աւետիսեան | 8 | » | » | այո | |
| 54 | Միսակ Աւետիսեան | 7 | » | » | ոչ | |
| 55 | Միսակ Թադէոսեան | 10 | » | » | | |
| 56 | Մկրտիչ Աբրահամեան | 11 | » | ոչ | | |
| 57 | Գալուստ Մկրտչեան | 10 | Բերում | » | | |
| 58 | Մովսէս Մկրտչեան | 14 | » | » | | |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 59 | Յովսէփ Դաւթեան | 14 | » | ոչ | |
| 60 | Գալուստ Մակարեան | 10 | » | " | |
| 61 | Արամ Մակարեան | 8 | » | " | |
| 62 | Նիկօ Առաքելեան | 14 | Իշխանձոր | " | |
| 63 | Հայրիկ Մանուկեան | 10 | » | " | |
| 64 | Յակոբ Յարութիւնեան | 9 | Արտինք | հայր | |
| 65 | Գուլէ Յարութիւնեան | 10 | » | մայր | |
| 66 | Ումիկ Թադէոսեան | 8 | » | " | |
| 67 | Թադէոս Ստեփանեան | 13 | » | ոչ | |
| 68 | Հմայեակ Պօղոսեան | 8 | Կէլիդաղ | հայր | |
| 69 | Մուշեղ Միսակեան | 8 | Հաւար | » | |
| 70 | Արսէն Յովհաննիսեան | 6 | Սիմալ | » | |
| 71 | Միսակ Գէորգեան | 7 | » | » | |
| 72 | Արամ Պետոյեան | 8 | Հաւար | » | |
| 73 | Աղաւնի Ղազարեան | 3 | Ղորդոց | » | |
| 74 | Արէգ Վարդանեան | 7 | Խնուս | » | |
| 75 | Արէգ Գէորգեան | 6 | Ղօրաժկ | » | |
| 76 | Սահակ Գրիգորեան | 4 | Սրտինձ | » | |
| 77 | Սամսոն Գրիգորեան | 3 | » | » | |
| 78 | Զաքար Մանուկեան | 9 | » | » | |
| 79 | Հրանոյշ Գասպարեան | 8 | Փելայ | » | |
| 80 | Նուարդ Կարէեան | 14 | Կրիլտէր | » | |
| 81 | Միհրան Կիրակոսեան | 12 | » | » | |
| 82 | Մուրադ Մակարեան | 10 | Կոփ | » | |
| 83 | Ղուկաս Յովհաննիսեան | 16 | » | ոչ | այո |
| 84 | Եղիշէ Աւետիսեան | 16 | Կէլէկղել | հայր | " |
| 85 | Պօղոս Առաքելեան | 12 | » | ոչ | ոչ |
| 86 | Արէթ Ադամեան | 12 | » | » | " |
| 87 | Վերժինէ Մրտիկեան | 9 | Վան | մայր | այո |
| 88 | Պարգև Մրտիկեան | 7 | » | » | ոչ |
| 89 | Մկրտիչ Մրտիկեան | 3 | Վան | » | ոչ |
| 90 | Նուարդ Աստուածատուրեան | 13 | Բայազէդ | ոչ | այո |
| 91 | Յովսէփ Յարութիւնեան | 4 | » | » | ոչ |
| 92 | Արտաշէս Մարտոյեան | 14 | Աղբեց | մայր | այո |
| 93 | Մանուկ Թորոսեան | 6 | Կիլէկիւզ | » | ոչ |
| 94 | Գուրգէն Յակոբեան | 10 | Գեաւուրմա | ոչ | այո |
| 95 | Գրիգոր Տօնոյեան | 11 | Իւան | » | ոչ |
| 96 | Առաքել Միքայէլեան | 15 | Վէներիկ | ոչ | այո |

*Թարվանսարայի որբանոցի որբերի անուանացուցակը.*

*Նոյեմբերի 1-ին 1916 թ.*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Եղիազարեան Յարութիւն | Պիթլ. Սև Քար | 14 | այո | ոչ |
| 2 | Սիմէօնեան Եղիազար | Պատի Գիւղ | 14 | » | » |
| 3 | Մուրադեան Գաբրիէլ | » » | 16 | » | » |
| 4 | Շահինեան Սերոբ | Սև Քար | 15 | » | հայր |
| 5 | Գասպարեան Սահակ | Սինդ | 16 | » | ոչ |
| 6 | Գասպարեան Օհաննէս | » » | 10 | » | » |
| 7 | Կարոյեան Արշակ | Մխկներ | 13 | " | » |
| 8 | Նշանեան Աստուր | Բերդակ | 5 | ոչ | » |
| 9 | Գասպարեան Աւետիս | » » | 11 | այո | հայր |
| 10 | Բաղդասար | » » | 8 | » | » |
| 11 | Բենիամին | Կուռուպաշ | 5 | » | » |
| 12 | Կարապետեան Գեղամ | | 11 | ոչ | մայր |
| 13 | Սեղրաքեան Սարգիս | Մխկներ | 15 | այո | ոչ |
| 14 | Ղազարեան Միհրան | » » | 12 | " | " |
| 15 | Խերոյեան Միսակ | Ալըշատ | 10 | " | " |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 16 | Աւետիսեան Օհաննէս | Նարեկ | 9 | » | » |
| 17 | Մաթոսեան Օհաննէս | Շատախ | 10 | » | » |
| 18 | Օհաննէսեան Նշան | Նոր գիւղ | 8 | » | » |
| 19 | Վարդանեան Հայրիկ | Արճակ | 6 | ոչ | " |
| 20 | Պետրոսեան Աւետիս | Շատախ | 8 | այո | " |
| 21 | Մկրտչեան Համբարձում | Էջմիածին | 9 | " | " |
| 22 | Համբարձումեան Սերոբ | Քուէշ | 9 | " | » |
| 23 | Քերոբ | » | 7 | ոչ | » |
| 24 | Ռուբինեան Գուրգէն | Վան | 8 | այո | » |
| 25 | Գալուստեան Մուշեղ | Թացվան | 7 | ոչ | " |
| 26 | Մարգարեան Նշան | Սորփ | 7 | » | » |
| 27 | Ղազարեան Զաքար | » | 5 | » | » |
| 28 | Սարգսեան Սերգէ | » | 5 | » | » |
| 29 | Դաւոյեան Թեմուր | Նոր գիւղ | 4 | » | " |
| 30 | Պետրոսեան Արմենակ | Նարեկ | 12 | այո | » |
| 31 | Կիրակոսեան Յակոբ | Նոր գաղ | 10 | այո | ոչ |
| 32 | Ստեփանեան Վաղինակ | Լիզ | 7 | » | " |
| 33 | Մուրադեան Մկրտիչ | Խաչան | 6 | » | " |
| 34 | Մինասեան Դաւիթ | Խիզան | 7 | » | " |
| 35 | Ծաղոյեան Գրիգոր | Խարիթ | 8 | " | " |
| 36 | Սերոբեան Աւագ | Ծափառ | 8 | » | " |
| 37 | Անթունազեան Սարգիս | Խարիթ | 7 | " | " |
| 38 | Տիգրանեան Առաքել | Կաջբաջ | 11 | » | " |
| 39 | Յակոբեան Պետրոս | Դշեղ | 7 | » | » |
| 40 | Մկրտիչ | » | 6 | » | " |
| 41 | Թադէոսեան Միհրան | Շամշադին | 11 | » | " |
| 42 | Ամիրեան Պարգև | Պիթլիս | 11 | » | " |
| 43 | Մուշեղեան Յովակիմ | » | 4 | ոչ | ոչ |
| 44 | Հայրիկեան Հրանտ | — | 5 | — | » |
| 45 | Մարտիրոսեան Անուշաւան | — | 7 | — | " |
| 46 | Աւետիսեան Յարութիւն | Դլո | 7 | — | " |
| 47 | Մուշեղեան Յովսէփ | Վան | 5 | — | " |
| 48 | Մարտիրոսեան Օհաննէս | Շատախ | 9 | այո | " |
| 49 | Առոյեան Երուանդ | Գիսկ | 9 | » | մայր |
| 50 | Զաքարեան Յարութիւն | Զորուէնա | 4 | ոչ | ոչ |
| 51 | Մանուկեան Յակոբ | Շատախ | 13 | այո | " |
| 52 | Բաղդասարեան Գասպար | Ֆիրբադալու | 15 | " | " |
| 53 | Դաւթեան Կարապետ | Կարկառ | 13 | » | մայր |
| 54 | Յակոբեան Մարտիրոս | Վան-կոմս | 12 | » | ոչ |
| 55 | Յովսէփեան Ազատ | Վան | 9 | » | " |
| 56 | Խլոյեան Սիմոն | Կարկառ | 11 | » | հայր |
| 57 | Մանուկեան Մարտիրոս | Խաչան | 15 | " | ոչ |
| 58 | Մուրադեան Ալէքսան | » | 13 | » | " |
| 59 | Յովսէփեան Յարութիւն | Խորգոմ | 6 | ոչ | " |
| 60 | Աստուրեան Ռուբէն | Բարկոթ | 16 | այո | " |
| 61 | Յարութիւնեան Իսկուհի | Պստի գիւղ | 16 | այո | մայր |
| 62 | Տանգո | » | 13 | " | » |
| 63 | Նունուշ | » | 4 | ոչ | » |
| 64 | Աստուրեան Գեղուհի | Մխկներ | 14 | այո | մայր |
| 65 | Փօղոսեան Շուշանիկ | » | 14 | " | մայր |
| 66 | Աղիզեան Մարիամ | » | 9 | " | ոչ |
| 67 | Խաչոյեան Ալթուն | Քոէլ | 10 | » | » |
| 68 | Աւետիսեան Աղաւնի | Բերկրի | 14 | " | » |
| 69 | Ռեհան | » | 12 | » | » |
| 70 | Գասպարեան Ուստիան | » | 13 | » | » |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 71 | Գալուստեան Աղաւնի | » | 15 | » | » |
| 72 | Բաղդասարեան Ոսկեհատ | Քոէլ | 9 | » | » |
| 73 | Մանուկեան Սաթենիկ | Բերդակ | 9 | » | » |
| 74 | Ազատուհի | » | 6 | ոչ | » |
| 75 | Յովհաննէսեան Թագուհի | Վառնա | 11 | այո | » |
| 76 | Սարգսեան Հրանուշ | Հայոց Ձոր | 11 | ոչ | » |
| 77 | Նարգիզ | » | 9 | ոչ | » |
| 78 | Տիգրանեան Իսկուհի | Սևան | 5 | » | » |
| 79 | Յովհաննիսեան Մայրիկ | Վան | 5 | " | » |
| 80 | Խաչիկեան Անժէլ | » | 9 | այո | » |
| 81 | Միհրանեան Լուսիկ | Պատի գիւղ | 9 | » | » |
| 82 | Պետրոսեան Աղնիւ | Բաշկալէ | 6 | ոչ | » |
| 83 | Մարտիրոսեան Աղաւնի | Խոսպ | 9 | այո | » |
| 84 | Մանուկեան Նուբար | » | 9 | " | » |
| 85 | Վարդանեան Ազատուհի | Արճակ | 9 | » | » |
| 86 | Գէորգեան Ալմօ | Քոչկան | 10 | " | » |
| 87 | Աստուածատուրեան Թագուհի | Գոշավանք | 7 | " | » |
| 88 | Խաչատուրեան Նոյեմզար | Առինջ | 6 | » | » |
| 89 | Լեւոնեան Հայկանուշ | Գաւաշ | 7 | » | " |
| 90 | Սիմօնեան Կաքաւ | Վան | 5 | ոչ | " |
| 91 | Մելքոնեան Մարգարիտ | Խժիժկ | 6 | » | » |
| 92 | Մովսէսեան Զարուհի | Վանձեղ | 5 | ոչ | ոչ |
| 93 | Աւետիսեան Ձերո | Խմբից | 7 | » | » |
| 94 | Խաչիկեան Գինո | Միգա | 6 | » | » |
| 95 | Հայրիկեան Լէլո | Քոէլ | 4 | » | » |
| 96 | Շողակաթ | Բերկրի | 4 | » | » |
| 97 | Նունուշ | Վան | 3 | " | » |
| 98 | Սիրուշ | » | 4 | » | » |
| 99 | Յարութիւնեան Նեկտար | Բիթլիս | 5 | » | » |
| 100 | Յովհաննիսեան Նուբար | Կուռուբաշ | 7 | այո | » |
| 101 | Մկրտչեան Մարիամ | Խիզան | 7 | » | » |
| 102 | Թորոսեան Մաքրուհի | » | 7 | » | » |
| 103 | Գէորգեան Մարգարիտ | Խժիժկ | 8 | » | » |
| 104 | Մովսէսեան Հայկանուշ | Կվեր | 9 | » | » |
| 105 | Գրիգորեան Վարդիթեր | Կարկառ | 6 | ոչ | « |
| 106 | Ղազարեան Ոսկի | Կանճառ | 6 | " | " |
| 107 | Պօղոսեան Զինա | Խլաթ | 9 | այո | » |
| 108 | Եղոյեան Սուսոն | Պօղոս | 7 | այո | » |
| 109 | Աւետիսեան Էթար | » | 7 | " | » |
| 110 | Պօղոսեան Մաքրուհի | » | 9 | " | " |
| 111 | Ղազարեան Անուշ | Աղգան | 9 | " | » |
| 112 | Պետրոսեան Եղիսաբեթ | Պատի գիւղ | 7 | ոչ | » |
| 113 | Սիմօնեան Մաքրուհի | Պատի գիւղ | 11 | այո | » |
| 114 | Կարապետեան Մաքրուհի | Ղուռուբաշ | 6 | ոչ | մայր |
| 115 | Մուրադեան Մարիամ | Խաչանց | 15 | այո | ոչ |
| 116 | Բաւէն | » | 9 | " | » |
| 117 | Սարգսեան Արաքսի | Խորգոմ | 11 | " | մայր |
| 118 | Յովսէփեան Վարսենիկ | Վան | 12 | " | հայր |
| 119 | Յովսէփեան Սիրուն | » | 8 | ոչ | մայր |
| 120 | Տէր Կարապետեան Արշանուշ | Սխկա | 10 | այո | ոչ |
| 121 | Օվասարեան Լուսիկ | Խաչանց | 15 | ոչ | » |
| 122 | Ռեհան | » | 13 | այո | » |
| 123 | Օվասարեան Գիւլո | Խաչան | 5 | ոչ | ոչ |
| 124 | Մուրադեան Նուբար | » | 10 | այո | " |
| 125 | Մանուկեան Աննա | » | 10 | " | " |
| 126 | Պետրոսեան Աղնիւ | Կանկվար | 15 | " | " |
| 127 | Գրիգորեան Լուսիկ | Բարկոթ | 6 | ոչ | մայր |